

# ՀՊԱՐՏ ՆԱՎԱԿԸ

*ԱՆԱՏՈԼԻ ՄԻՏՅԱԵՎ*

Եղել է, չի եղել, մի փոքրիկ տղա է եղել, քեզ շատ նման։ Գուցե քեզնից ավելի պակաս չարաճճի։ Մեկ էլ, ա՛յ թե ինչ տարբերություն կարող էր լինել ձեր միջև. դու երազում ես օդաչու դառնալ, իսկ նա երազում էր նավով լողալ։ Նա սիրում էր ծովը, թեև ոչ մի անգամ չէր տեսել, սիրում էր նավաստիներին, սիրում էր նավը և ամենից շատ՝ «Ավրորա» հածանավը։

Մի անգամ այդ տղան բարձրացավ իրենց տան վերևի հին ձեղնահարկը ու դռան բռնակի մեջ մի փայտ անցկացրեց, որպեսզի բակի փոքր երեխաները ներս չմտնեն, և սկսեց ինչ-որ բան սղոցել ու տաշել։ Երբ նա ձեղնահարկից իջավ, հավաքեց բակում խաղացող փոքրիկ հետաքրքրասերներին ու նրանց տարավ դեպի մոտակա առվակը։ Տղան մի նավակ ուներ ձեռքում բռնած, որի տախտակամածի վրա՝ ոտները լայն բաց արած, կանգնած էին կեչու կեղևից պատրաստած հինգ նավաստիներ։ Նավակի կողքերին քիմիական մատիտով գրված էր «Ավրորա»։ Եվ բոլորին, ովքեր կարդալ գիտեին, այդ նավակը ոչ թե պստլիկ կայմ ունեցող մի տախտակի կտոր էր թվում, այլ Բալթիականի լեգենդար հածանավը՝ «Ավրորան», որից այնպես սարսափում էին կապիտալիստները։

Երբ տեղ հասան, փոքրիկ տղան վեր քշտեց շալվարի փողքերը և ջուրը մտնելով, բաց թողեց նավակը։ «Ավրորան» սկսեց լողալ ջրի վրա, իսկ փոքրիկ տերն ու ընկերները քայլեցին նրա հետևից առվի ափով։

Նավակի տակ խայտում էր ճերմակ խարակածկների վտառը, իսկ նրա վրա պտըտվում էին ճպուռները, բայց նավակն արհամարհելով այդ բոլորին, լողում էր փոքրիկ ալիքների վրայով և ավելի ու ավելի արագացնում իր ընթացքը։ Այսպես, նա բավական հեռու գնաց, և ավանը մնաց հեռվում ու այլևս չէր երևում։ Նրա հետ եղած տղաները վաղուց արդեն տուն էին վերադարձել։ Իսկ «Ավրորան» դեռ շարունակում էր լողալ։ Եվ տղան վազում էր առվի ափով։

Վերջապես, նրա վերադառնալու ժամն էլ եկավ. ափերը գնալով ավելի ճահճոտ դարձան. ոտքդ դնեիր՝ կխրվեիր սև տիղմի մեջ։ Տեղ-տեղ ճահճից դուրս ցցված միայնակ եղեգը թույլ օրորվում էր քամուց, սվսվում և ինչ-որ բան շշնջում։ Հեռվում կապույտ անտառն էր փռված. սպիտակ ամպերը լուռ ու անշարժ կանգնել էին անտառի վրա և կարծես դիտում էին, թե ինչ է կատարվում ներքևում։ Փոքրիկ տղան ձեռքով հրաժեշտ տվեց իր նավակին և այսպիսի հրաման արձակեց նավաստիներին. «Երբե՛ք և ո՛չ մի տեղ չհանձնվել», և գնաց տուն։ Տանը նրան պատժեցին և ասացին, որ մյուս անգամ այդքան հեռու չգնա։

Բայց սրանով հեքիաթը չի վերջանում։ Դա դեռ սկիզբն է։

Գիշերը վրա հասավ։ «Ավրորան» շարունակում էր լողալ ջրի վրա։ Աղմկում էր մերձափնյա անտառը։ Երբեմն ինչ-որ ծառի վրայից սարսափելի ձայնով կանչում էր բվեճը, թավուտում ոռնում էին գայլերը։ Բայց «Ավրորայի» հինգ նավաստիները ոչնչից չէին վախենում. նրանք քաջ ու համարձակ կանգնած էին նավի տախտակամածին, ոտները լայն բաց արած։ Լուսաբացին առվակի ջրերը լցվեցին անտառի լճակը։ Ամբողջ կես օր էր պետք, որպեսզի նավակը կտրեր-անցներ լճակը։ Եվ հենց որ լիճն անցավ, ընկավ գետակը, որ սկիզբ էր առնում այդ լճից։ Մի շաբաթ էլ նավակը լո-

ՆՈՅԵՄԲԵՐ
№ 11 1961 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ղաց այդ գետակի վրայով, մինչև որ հասավ մեծ գետը և մի ամիս էլ մեծ գետի վրա լողալուց հետո հասավ ծովը։

Ջրից նավակը սևացել էր, իսկ կեչու կեղևից պատրաստած հինգ նավաստիները դարչնագույն էին դարձել։ Թվում էր, թե նրանք արևից ու քամուց էին այդպես սևացել։ Եվ երբ նրանք անցնում էին ծովափնյա քաղաքների կողքով, կամուրջների տակով կամ նավահանգիստների մոտով, նրանց տեսնող մարդիկ կանգնում էին և ժպտալով բղավում. «Երջանի՜կ նավարկություն»։

Հինգ նավաստիները ոչինչ չէին պատասխանում նրանց, չէ՞ որ նրանք նավային ծառայություն էին կատարում և մտածում էին հայրենի ափերից հեռանալու մասին, և այն մասին, թե ինչպես են իրենց դիմավորելու անծանոթ երկրներում ապրող մարդիկ...

... Եվ ինչքա՜ն մեծ էր ծովը։ Ցերեկը «Ավրորայի» նավաստիները տեսնում էին միայն արևը, ամպերն ու ալիքները, գիշերը՝ ալիքները, ամպերն ու աստղերը։ Եվ ուրիշ ոչինչ։ Նավակը բարձրանում էր սպիտակ փրփրաբաշ ալիքների վրա, ապա կանաչ լանջով սահում դեպի ցած, հետո դանդաղ սկսում էր բարձրանալ մի ուրիշ ալիքի գագաթը և նորից սահում դեպի ցած։ Վերև-ներքև, վերև-ներքև, այսպես՝ օրը տասը հազար անգամ։ Բայց ոչ մի նավաստու մտքով անգամ չէր անցնում դժգոհել դրանից։ Ծովը ծով է, ի՞նչ կարող ես անել։

Այսպես, շատ օրեր ու գիշերներ անցան, մինչև որ, վերջապես, հեռվում երևաց մի սև, անհարթ հողաշերտ։ Դա օտար երկրի հող էր։ Առաջինը «Ավրորային» նկատեցին ձկնորսները, որ երկար ու ծանր ցանցեր էին քաշում ծովից։ Երիտասարդ ձկնորսը, որ բրեզենտի կոշտ բաճկոնակ էր հագել, բարձրաձայն կարդաց նավակի անունը և անծանոթ լեզվով ինչ-որ բան ասաց իր ընկերներին։ Նրանք իրենց գործերը թողած՝ ուղղվեցին ձյութած սև նավակների մեջ և լայն գլխարկները թափահարելով, սկսեցին երգել։ Նույնիսկ առանց լեզուն իմանալու, կարելի էր կռահել, թե ինչ երգ է դա։ Դա մի երգ էր, որի կրկներգում կային այսպիսի խոսքեր.

*«Դո՛ւ, իմ Մոսկվա՜,*
*Շատ սիրելի իմ քաղաք...»*

Եվ ինչ էլ որ ասեին այդ ձկնորսները, ինչպիսի



մարդկային լեզվով էլ խոսեին, այս դաժան և անհանգիստ ծովի վրա այսքան երկար ճանապարհորդություն կատարելուց հետո, շատ հաճելի կլիներ։ Եվ հազար անգամ ավելի հաճելի է, երբ զգում ես, որ ճանաչում են քո հայրենիքը, երգում են նրա մասին։ Նավաստիներն ուզում էին նույնիսկ «Յաբլոչկա» պարել, բայց, իհարկե, այդպիսի բան չարեցին։ Չէ՞ որ նրանք մշտական պահակներ էին կանգնած, և ոչ ոք չկար իրենց փոխարինող։

Քամիները չէին դադարել, և «Ավրորան» օրորվելով ալիքների վրա, մեկ հեռանում, մեկ նորից մոտենում էր ափին։ Եվ ամեն անգամ նավակը տեսնելիս՝ մարդիկ սկսում էին երգել այն նույն երգը, որտեղ ասում էին, որ Մոսկվան իրենց ամենասիրելի քաղաքն է։ Պատահում էր, որ ափին ահագին բազմություն էր հավաքվում։ Այն ժամանակ երգը խլացնում էր ալիքների շառաչը և «Ավրորային» ուղեկցում մինչև հեռու հորիզոնը։ Հինգ նավաստիները նավի վրա կանգնած՝ տեսնում էին, թե ինչպես են իրարից հեռանում ժպտադեմ տղամարդիկ, կանայք ու երեխաները, դեպի վեր թռչող գլխարկները, օդում ծփացող թաշկինակները, որ հեռվից նման էին ծովի վրա թռչող ճայերի։

Մի անգամ քամին նավակը թոցրել տարել էր քարքարոտ մի կղզի, ալիքները նրան նետել էին քարերի վրա։ Այստեղ գուցե վերջանար նավակի պատմությունը, եթե, իհարկե, կղզու վրա չլիներ այն մեծ փարոսն ու նրա տակ կանգնած պահակը և պահակին հյուր եկած նրա թոռնիկը։ Փոքրիկ աղջիկը, որ կոացած խեցիներ էր հավաքում կղզու ափերից, տեսավ նավակն ու նրա հինգ տխուր նավաստիներին։ Նա իսկույն հասկացավ, որ ծովագնացների դրությունը լավ չէ, և անմիջապես վազեց պապիկի մոտ։

Ծերունի պահակն ինքն էլ երիտասարդ ժամանակ շատ էր եղել ծովում։ Նա հիմա էլ իր տաք բաճկոնի տակից կապույտ շերտավոր շապիկ էր հագնում և նավաստիական կավե ծխամորճ ծխում։ Նա իր չոր և դողդոջուն մատներով վերցրեց նավակը և մի քանի անգամ կարդաց նրա անունը։ Եվ չնայած որ պապիկը կաղ էր (պատերազմի ժամանակ ֆաշիստներն էին վիրավորել), սկսեց տեղում ցատկոտել։

— Ողջու՜յն ձեզ, փառապա՜նծ նավաստիներ, — ասաց նա՝ «Ավրորայի» անձնակազմին նայելով։ — Ինչ լա՜վ է, որ իմ փարոսը լուսավորել է ձեզ, և դուք եկել եք ինձ մոտ։ Այս օրը իմ թոռնիկի համար տոն կլինի։ Գիտե՞ս, թոռնի՛կս, թե որտեղից են եկել մեր հյուրերը։ Սովետական Միությունից։ Այնտեղ ինձ նման ծերունիները այսպիսի թաց ու խոնավ տեղերում չեն աշխատում, նրանք շատ ժամանակ ունեն իրենց թոռնիկների հետ խաղալու։

— Պապի՛կ, թո՛ղ այս նավաստիները մեզ մոտ մնան և ընդմիշտ մեզ մոտ ապրեն, — առաջարկեց աղջիկը, — նրանք ինձ շատ դուր եկան։

— Ո՛չ, — պատասխանեց ծերունի նավաստին, — նրանք չեն կարող մեզ մոտ մնալ և մեր երկուսին պատկանել։ «Ավրորային» սպասում են բոլոր ծովերի, բոլոր գետերի, բոլոր լճերի ու օվկիանոսնե-



րի ափերում ապրող աղքատ ու խեղճ մարդիկ։ Թող գնան այդ քաջ նավաստիները, թող ավելի և ավելի հեռու գնան նրանք։ Հիշիր, որ երբ դեպի փարոս է թռչում առաջին ծիծեռնակը, մենք սպասում ենք տաք օրերին։ Եվ այդ օրերն անպայման գալիս են։ Ծիծեռնակը գարնան ավետաբերն է, աղջի՛կս, իսկ այս նավակը՝ երջանիկ կյանքի ավետաբերն է, և բոլոր մարդիկ կտեսնեն այդ երջանիկ կյանքը... Հիմա ես նավակը կդնեմ արևի տակ, որպեսզի լավ չորանա, և նավաստիներն էլ տաքանան արևի տակ, իսկ դու՛, թոռնի՛կս, վազի՛ր և մի քիմիական մատիտ բեր, պետք է նորոգել նավակի անունը։

Երբ նավակը չորացավ, ծերունին այն զգուշությամբ դրեց ջրի վրա։ Աղմկալից մի ալիք եկավ ու «Ավրորային» տարավ դեպի ծովի խորքը։ Ծերունին ուսերին դրեց փոքրիկ թոռնիկին։ Եվ նրանք այդպես ափին կանգնած՝ աչքերով ուղեկցեցին նավակին, մինչև որ նա հեռացավ և կորավ նրանց հայացքից։ Աղջիկը ձեռքն էր թափահարում, իսկ ծերունին երգում էր.

*Դու՛, իմ Մոսկվա՛,*
*Շատ սիրելի իմ քաղաք...*

«Ավրորայի» հինգ նավաստիները հիանալի էին զգում իրենց։ Աղի ջրի կաթիլները գլորվում էին նրանց վրայից, ուժեղ քամին սուլում էր կայմի կատարին։ Գնում էին նավաստիները ու չգիտեին, թե էլի ինչ երկրների մարդկանց էին հանդիպելու։ Նրանք չգիտեին նաև, որ այդ րոպեին փարոսի շուրջը հայտնվել էր մի սուզանավ։ Նրա միջից ծովայինի գլխարկով մի մարդ դուրս եկավ կղզի. գլխարկի վրա, այնտեղ, որտեղ մեր նավաստիները աստղ ու խարիսխ ունեն, ամրացված էր պոչը ցցած ոսկե մի օձ։

— Հե՜յ, դո՛ւ, կա՛ղ ծողածուկ,— բղավեց նա պահակի հետևից։ Այստեղով «Ավրորա» անունով մի խաղալիք նավակ չի՞ անցել։ Եթե դու մեզ օգնես, և մենք կարողանանք այդ նավակը գտնել և ոչնչացնել, կապիտալիստները քեզ շատ փող կտան, և դու կկարողանաս ապրել լավ ու տաքուկ տան մեջ։ Իսկ եթե փորձես թաքցնել որևէ բան, ստիպված պիտի լինես ամբողջ կյանքդ բանտում անցկացնել։

— Այստեղով այդպիսի նավ չի անցել,— հաստատ ու կտրուկ պատասխանեց պահակը։— Թոռնի՛կս, դո՞ւ էլ չես տեսել։

— Ո՛չ, պապի՛կ, ես այդպիսի նավ չեմ տեսել,— պատասխանեց փոքրիկ աղջիկը։

Եվ նա անմիջապես սկսեց խաղալ խեցիների հետ, վախենալով, որ անծանոթ մարդը հանկարծ կնկատի իր հուզմունքը։

Երբ գորշ շնաձկան նման հսկայական նավը ամբողջովին սուզվեց ջրի տակ, ծերունին շոյեց աղջկա բաց, գրեթե սպիտակ գույնի մազերն ու ասաց, որ չնայած նա փոքրիկ է, բայց շատ լավ թոռնիկ է։ Հետո նա լցրեց իր կավե ծխամորճը և, նայելով մի քարի, սկսեց ինչ-որ բան մտածել։

«Ավրորայի» հինգ նավաստիները միաժամանակ ինչ-որ դղրդյուն լսեցին, որը գնալով ավելի ու



ավելի մոտիկից էր լսվում և ավելի էր ուժեղանում։ Դա ոչ քամու բվվոց էր և ոչ էլ ալիքների աղմուկ։ Իրենց այս երկարատև նավարկության ընթացքում նավաստիները կարողացել էին շատ լավ ճանաչել ծովի բոլոր ձայները և՛ հանգիստ ժամանակ, և՛ մոլեգնած ժամանակ։ Դա ինքնաթիռի դղրդյուն էր։ Նրանք այնքան շատ էին, որ ծածկել էին արևը, և նրանց թանձր ստվերը ընկել էր ծովի երեսին։ Այդ ինքնաթիռները, որոնց թևերին օձագալար նշաններ էին փակցված, որոնում էին «Ավրորային», այդ հպարտ անունը կրող նավակին։

Իսկ հենց այդ նույն ժամանակ ծովի վրա, երկու կողմերից, երևացին նավերը։ Նրանցից յուրաքանչյուրի վրա ծածանվում էին նույն օձագալար նշաններով դրոշներ։ Երկու հսկայական գորշ պատերի նման՝ նրանք մոտեցան այդ փոքրիկ նավակին։

Բայց ո՛չ, չվախեցան մեր նավաստիները, նրանք անմիջապես հիշեցին այն փոքրիկ տղայի հրամանը. «երբե՛ք և ո՛չ մի տեղ չհանձնվել»։ Նրանք, ինչպես միշտ, ամուր կանգնած էին տախտակամածին, ոտքերը լայն բաց արած։

Օձագալար, ոսկե նշաններով գլխարկները դրած օդաչուները նկատեցին նրանց։ Եվ ահա սև ու խոշոր ռումբերը սկսեցին տեղալ փոքրիկ նավակի վրա։ Երկու կողմերից մոտեցած նավերն էլ իրենց հերթին կրակ բաց արին նրա վրա, սուլում էին արկերը։ Հետո մի պահ ամեն ինչ լռեց։ Նույնիսկ լսվում էր, թե ինչպես է քամին երգում «Ավրորայի» փոքրիկ կայմի մեջ։ Եվ այդ ժամանակ ամբողջ ծովով մեկ՝ հանկարծ բարձրացան ջրային վիթխարի սյուներ։ Ջրային պտուտահողմի վրա ընկած նավակը թռավ բարձր օդի մեջ, ապա սուզվեց կատաղի ալիքների խորքը, բայց մի վայրկյան էլ չանցած՝ նա նորից դուրս եկավ։ Եվ նրա ամբողջ անձնակազմը՝ հինգ նավաստիները միասին կանգնած էին տախտակամածին նույն դիրքով՝ ամուր ու անվեհեր, հայացքները դեպի առաջ հառած։ Ինքնաթիռներից ընկնում էին ռումբերը, իսկ նավերից թռչում էին արկերը։ Եվ ջրային սպիտակ սյուները իրար հետևից երևում էին կապույտ ջրի երեսին և պայթյունով նորից փլվում ծովի մեջ։ Բայց նավակը մնացել էր անվնաս։

Այն ժամանակ օձագալար նշաններով օդաչուները հուսահատ շուռ տվեցին իրենց ինքնաթիռները և գնացին կապիտալիստներին ասելու, որ հնարավոր չէ ոչնչացնել «Ավրորան» և ոչ էլ կանգնեցնել նրա ընթացքը։ «Ավրորան» մի ալիքից մյուսի վրա թռչելով, անվնաս լողում էր երկու նավերի արանքով, որոնց վրա ծածանվում էին ոսկյա օձագալար նշաններ ունեցող դրոշները։ Թնդանոթների սև փողերը ուղղվեցին դեպի նավակը։ Բայց ո՛ւմ կարող էին վախեցնել։ Հինգ նավաստիները, ինչպես միշտ, հաստատակամ կանգնած էին նավակի տախտակամածին։ Ծովը շարունակում էր թրջել նրանց իր աղի ջրով։ Քամին ուրախ բվվում էր նրա կայմի շուրջը և քիչ-քիչ քշում, տարածում արդեն դադարած կրակոցների ծուխը։

Վերջապես երևաց արևը, որի կուրացուցիչ գունդը դանդաղորեն իջնում էր դեպի հորիզոնը, որտեղ երեկոյան երկինքը միանում էր ծովի ջրերի հետ, արևից մինչև «Ավրորա» նավակը մի պայծառ ճանապարհ էր ձգվում, «Ավրորան» լողում էր այդ ճանապարհով։ Նրան սպասում էին ուրիշ երկրների մարդիկ։

*Թարգմ. Ա. ԲԱԼԱՃՅԱՆ*




*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

# ԲԱԼԼԱԴ ԶԻՆՎՈՐԻ ՈՒ ՓՐԿՎԱԾ ՄԱՆԿԱՆ ՄԱՍԻՆ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Նա զինվոր էր մի հասարակ,
Չարքային էր արի,
Կռվի մեջ բոց էր ու կրակ,
Կյանքում՝ մեղմ ու բարի:

Ճամփաներով ահեղ մարտի
Հերոսաբար անցել
Ու Բեռլինում հիմա փառքի
Արձան է նա դարձել:

Սուրն է պահել նա մի ձեռքում,
Որ արդար էր այնքան,
Մյուս ձեռքով գրկել քնքուշ
Մի գանգրահեր մանկան:

Ու ժպտում է մանուկն այն լավ,
Նրա կրծքին փարված,
Շուրջն արևի լույսն է զուլալ,
Ու ծաղիկ է փռված:

* * *

Լույս ու ծաղիկ... Բայց այն տարի
Չկար ծաղիկ ու լույս,
Միայն արկն էր որոտալի
Ոռնում խելակորույս:

Ականների ահեղ քամին
Ողջ Բեռլինն էր ցնցում.
Մահ էր փռում չար թշնամին
Անգամ վերջին շնչում:

Շուրջը ծուխ էր համատարած
Ու սուլոց էր վայրի...
Մարտնչում էր կրակ դառած
Այն չարքայինն արի:

Մարտնչում էր ու երազում
Հեռու՜-հեռու՜ մի տուն...
Զով այգին է այնտեղ ծաղկում,
Ու խշշում է առուն:

Իսկ առվի մոտ, բալենու տակ,
Թոթով երգը շուրթին,
Չար ու բարուն դեռ անգիտակ,
Խաղում է իր որդին:



Վերջին մարտն է... Շուտով, շուտով
Կդառնա ինքը տուն
Ու կգրկի կրակ սրտով
Իր գանգրահեր որդուն:

Բայց մարտ է դեռ: Թշնամական
Տանկն է սողում առաջ...
Ու լսվում է հանկարծ մանկան
Սրտակեղեք հառաչ:

Ի՞նչ... Ու տեղից ելնում է նա,
Ելնում գնով կյանքի,
Մի մանկիկ է ընկած ահա
Ճանապարհին տանկի:

Դղրդում է զրահապատ
Տանկը՝ խաչը վրան,
Արդեն մոտիկ՝ մոտիկ է շատ,
Ճզմելու է նրան:

Շուրջը ծուխ է, շուրջը՝ շառաչ.
Գնդակներն են երգում...
Քաջ զինվորն այն նետվում առաջ
Ու մանկանն է գրկում:

Խլում նրան տանկի տակից
Ու տանում է կամաց,
Բայց թշնամու սև գնդակից
Ընկնում է արնամած:

Ընկնում է նա ու երազում
Տեսնում հեռու մի տուն,
Զով այգին է այնտեղ նազում,
Ու խշշում է առուն:

Եվ թվում է, թե ինքն արդեն
Վերադարձել է տուն

Ու գրկել է իր զանգրահեր,
Կապուտաչյա որդուն...

Բայց արյունն էր հոսում կամաց
Նրա խոցված սրտի,
Որի վրա, խղճի նման,
Տոմսն էր կոմունիստի...

* * *

Ճամփաներով ահեղ մարտի
Հերոսաբար անցել
Ու Բեռլինում հիմա փառքի
Արձան է նա դարձել:

Նա մի ձեռքում սուրն է պահել,
Որ արդար էր այնքան,
Իսկ գրկի մեջ գալիքն է մեր՝
Տեսքով այն լավ մանկան:



# Ազնվության արժեքը

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Պատմության դասատու Հայրապետ Ծատուրյանը դասարան մտավ հանկարծակի, աշակերտները միանգամից լռեցին։ Ծատուրյանը արագաքայլ առաջացավ դեպի սեղանը, նստեց, առջևը դրեց մատյանը, բացեց, մի ձեռքի նիհար բթամատի ու ցուցամատի արանքում ամուր սեղմեց ցուցակի եզրը և գլուխը բավական հեռու պահած՝ սկսեց.

Աբրահամյան Նորայր։ Ազնավուրյան Նվարդ։— Նա չէր բարձրացնում հայացքը, չէր նայում շուրջը. ձայնից ճանաչում էր բոլորին.— Առաքելյան Աշոտ։

Ոչ ոք չպատասխանեց։

— Առաքելյան Աշոտ։

Ծատուրյանը միայն այն ժամանակ է բարձրացնում հայացքը, երբ ոչ ոք չի արձագանքում։ Եվ Աշոտ Առաքելյանը ասաց.

— Ներկա։

— Քնա՞ծ ես։

— Արթուն եմ, ընկեր Ծատուրյան։

— Քնած ես։

Աշոտ Առաքելյանը չպնդեց, թեև իսկապես ինքը քնած չէր։

— Բալայան Վերժին...

Վերջացնելուց հետո նա գրպանից հանեց հաստ, ուռուցիկ ապակիներով ակնոցը, դրեց իր առջև, սեղանի վրա։ Ապա բացեց մատյանի էջերը, գրչածայրով խզզոց հանելով՝ ինչ-որ բան գրեց մատյանում, նորից թերթեց, և նրա նիհար բթամատը հանդարտ սահեց ցուցակի եզրով։ Ամենադժվարը այս է, այսպես սպասելը, մինչև դասատու Ծատուրյանի թրթռացող շուրթերը կարձակեն հնչյուն, մինչև Աշոտ Առաքելյանը կհամոզվի, թե ում է կանչելու նա։ Պետք չէ թաքնվել առջևը նստած աշակերտի թիկունքում. Ծատուրյանը դաս հարցնելիս երբեք չի զննում աշակերտների դեմքերը. «Դրա համար կա ցուցակ»,— ասում է

նա։ Աշոտը ցնցվեց և հետևյալ ակնթարթին շնչեց խոր ու հանգիստ։

— Ա... գնավուրյան Նվարդ։ Պատմի՛ր։

Եվ, մինչ Նվարդը կելներ իր կողքից, Աշոտը հապճեպ շշնջաց նրան.

— Ձգձգի՛ր, մինչև ես սովորեմ։

Նա Նվարդի պայուսակի միջից քաշեց պատմության դասագիրքը։ Գիրքը բացելիս նա էջերի արանքում տեսավ թղթե մի ռուբլիանոց և մի հիսուն կոպեկանոց։ Վերցրեց այդ փողերը, էլի թերթեց գիրքը։ Հետո փողերը դրեց տեղը, բացեց իրեն հարկավոր էջը։ Նա ճակատը հենել էր սեղանին, դեմքը խոնարհել էր ծնկներին դրած գրքին, կարդում էր։



Նվարդը Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների մասին գիտեր ավելի շատ բան, քան գրված էր դասագրքում։ Դասատուն չէր ընդհատում նրան, մանրամասն և անծանոթ շարադրված իր առարկան նրան թվում էր գրավիչ և հետաքրքրաշարժ։ Նա ընթամատյանի ցուցակի վրա սեղմել էր հաջորդ աշակերտի անվան դիմաց։ Աշոտը գիտեր այդ և արագ-արագ կարդում էր հելլենիստական մշակույթի մասին։

— Բավական է։ Պատմի՛ր հելլենիստական մշակույթի մասին,— Ծատուրյանը այս ասաց Նվարդին։ Ապա ասաց.— Աշո՛տ, բարձրացրո՛ւ գլուխդ։

Աշոտը գիրքը հրեց գրադարակի մեջ, բարձրացրեց գլուխը. հիմա նա զգաց, որ ինքը չի կարողանալու սովորել դասը, որովհետև դասատու Ծատուրյանը մատը սեղմել է հենց իր անվան դիմաց և հիմա ուր որ է կասի Նվարդին.

— Բավական է։ Ապրես։ Նստի՛ր։— Եվ կասի.— Առաքելյան Աշոտ, գրատախտակի մոտ։

Աշոտը զայրացած էր, որ այդ ամենը ուրիշ կերպ չէր լինում, լինում էր միայն այդպես։ Նա ջղայնացած էր և արդեն անհամբեր՝ որպեսզի ասեր.

— Չեմ սովորել։

— Ինչո՞ւ չես սովորել։

Նա երբեք չէր բացատրում, թե ինչու չէր սովորել։ Այդ ամենի վերջը, համենայն դեպս, լինելու էր մատյանում իր անվան դիմաց նշանակված մի երկուս։ Նա ուզում էր, որ այդ էլ շուտով լիներ։

— Դու չուզեցիր ինձ օգնել,— ասաց նա Նվարդին, փողոցում, դասերից հետո։ Նրանք դասարանում նստում էին միևնույն նստարանին և ապրում էին միևնույն թաղում։— Սրանից հետո դու ինձ հետ չես գա։ Ետ մնա ինձանից,— և արագացրեց քայլերը։

Աղջիկը հասավ նրան։

— Ես կգամ քեզ հետ։

— Լավ։ Ինձանից առաջ գնա։

Նա պայուսակը դրեց մայթին, պատի մոտ, նըստեց վրան։

— Գնա՛։

— Ես ուզում էի քեզ օգնել։

— Ուզո՞ւմ էիր։ Դու տեսնում ես, որ տխուր եմ։

— Մյուս անգամ ես քեզ կօգնեմ,— ասաց Նվարդը։

— Ես դրա համար չեմ տխուր,— նա թվում էր կարեկցանքի կարոտ, բայց և չընկճվող, անհոգ ու դրանով էլ՝ գրավիչ։— Ուզո՞ւմ ես օգնել ինձ։ Տո՛ւր ինձ մի ռուբլի։ Ես պատահմամբ ջարդեցի ժամացույցի ապակին։ Եթե մայրս նկատի՝ կծեծի։

Նա նկատեց, որ աղջիկը հապաղում է։ Ուզեց հեռանալ։ Նա միայն այդ աղջկան էր ասել. «Տեսնո՞ւմ ես, որ ես տխուր եմ»։

— Սպասի՛ր։ Ես փողի համար չեմ մտածում։

Աղջիկն շտապով պայուսակից հանեց, նրան մեկնեց ռուբլիանոցը.

— Վերցրո՛ւ։

Հետևյալ օրը, դասամիջոցին կլոր դեմքով, կլորմանր, իրարից հեռու աչքերով ու սրածայր քթով կարճլիկ Տաճատը պատմում էր մի խումբ աշակերտների։



— Երեկ երեկոյան ես ու Աշոտը Քանաքեռի կոմիտասի այգում նստեցինք կարուսել։ Հետո կերանք կաթնասերով պաղպաղակ, խմեցինք լիմոնադ։— Նա պատմում էր համոզված, որ իրենց խմբի տղաներից ոչ մեկը չի անում այդպիսի բաներ, որ նրանք նախանձում են իրեն։— Հետո տեսանք հնդկական կինո, հետո Աշոտը գնեց մի տուփ «Կազբեկ»։ Հավատով չէ, հասկանո՞ւմ եք, մի տուփ։ Մենք ուրախ էինք։

— Այդ ի՞նչ փողերով,— հարցրեց տղաներից մեկը։

— Աշոտը ճարում է։— Տաճատի այտերը դարձան կլորիկ, քիթը՝ ավելի սուր, աչքերը փայլեցին։ Այդպես լինում էր, երբ Տաճատը զգում էր բերկրանք։

— Դու միայն այդ ռուբլիանո՞ցը ունեիր,— դասի ժամանակ հարցրեց Աշոտը։

— Ո՛չ,— ասաց Նվարդը։

Աշոտն ուրիշ ոչինչ չասաց։ Տուն գնալու ճանապարհին Նվարդը հարցրեց.

— Մայրդ նկատե՞ց, որ ժամացույցի ապակին չկա։

— Նոր ապակի գնելու համար ժամագործը երկու ռուբլի ուզեց,— ասաց Աշոտը։— Դու միայն այդ ռուբլիանո՞ցը ունեիր։

Նա կարծեց, որ նրա մոտ եղած հիսունանոց կոպեկը ես պահանջելը շատ կլինի, և նա կարող է մերժել։

— Քո պայուսակում ես ուրիշ փող էլ տեսա։ Կտա՞ս,— Նա համառ էր ու անպատկառ։ Նվարդին նա անշնորհակալ թվաց։ Աղջիկը փութով հանեց հիսուն կոպեկանոցը, ափի մեջ ցույց տվեց նրան.

— Դու տեսել ես։ Ես ավելին չունեմ։

— Տո՛ւր ինձ։

Նվարդը կտար այդ հիսուն կոպեկանոցը, բայց նա այդպես անպատկառ և մանավանդ այդպես անշնորհակալ պիտի չլիներ իր հետ։ Իրենք գոնե մի քիչ ավելի մտերիմ պիտի լինեին և մի քիչ ավելի անկեղծ. գոնե նա իր հետ պիտի վարվեր մի քիչ համեստ։ Նա ետ քաշեց ձեռքը, որի ափի մեջ պահում էր հիսուն կոպեկանոցը։

— Սա քեզ բավական չի։ Քեզ հարկավոր է ես մի ռուբլի։ Ես կարող եմ օրեկան տաս կոպեկ հավաքել։

— Բավական կանի։ Լսի՛ր, տո՛ւր ինձ, լսի՛ր։

Աղջիկը ձեռքը տարավ հետևը։ Աշոտը բռնեց նրա դաստակը, մյուս ձեռքով ջանում էր բացել նրա բռունցքը։

— Տո՛ւր, ասում եմ, ձեռքդ բա՛ց։

Նվարդը արդեն կասկածում էր։

— Ի՞նչ ես արել մի ռուբլին։ Ցույց տուր մի ռուբլին, հետո ես կտամ։ Ո՞ւր է մի ռուբլին.— նա ջանում էր չբացել բռունցքը և դաստակը պրծացնել նրա ձեռքերի միջից։— Սա բավական

չէ ժամացույցը նորոգելու համար: Ինչի՞դ է պետք-ասա՛:

— Ցո՛ւր, ասում եմ, ինձ պետք է: Եթե ուզում եմ՝ նշանակում է պետք է:

Նվարդը չէր ափսոսում այդ հիսուն կոպեկը և ոչ էլ նախորդ օրը տված մի ռուբլին: Թող նա, ինչպես վայել է, հասկացներ իրեն, թե իր ինչին է պետք փողը, թող այդպես չսեղմեր, չցավեցներ իր ձեռքը, չլիներ այդպես կոպիտ ու չնկատող: Ախր իրենք նստում էին միևնույն նստարանին, իրենք միշտ միասին էին գնում դպրոց և դպրոցից գալիս տուն: Նվարդը համոզված էր, որ նա միայն իրեն կարող էր ասել. «Դու տեսնո՞ւմ ես, ես տխուր եմ...» Նա ուժգին ետ քաշեց ձեռքը:

— Թո՛ղ: Այդպես մի՛...

Բայց ինչպես կարող էր այդ ամենը հասկացնել նրան, որ իրեն նույնիսկ լսել չէր ուզում:

— Թո՛ղ:

Նա ուժգին ետ քաշեց ձեռքը: Աշոտը այդ ձեռքը սեղմել էր ամուր, նա զգում էր, որ նրանից հեշտությամբ չի առնելու այդ հիսուն կոպեկը:

— Չե՞ս տալիս:

Աղջիկը նրա ձայնի մեջ զգաց սպառնալիք. այդ արդեն ամեն սպասածից ցավալի էր:

— Չե՛մ տա: Ա՜հ...

Աշոտը ոլորեց նրա ձեռքը, աղջիկը բացեց բռունցքը. հիսուն կոպեկանոցը ընկավ մայթին, Աշոտը ոտքը դրեց վրան, հրեց Նվարդին, հիսուն կոպեկանոցը դրեց գրպանը, ապա գետնից վերցրեց իր պայուսակը: Աղջիկը լուռ էր: Աշոտը ետ դառավ, նայեց նրա կողմը, զգաց, որ աղջկա աչքերը ինչքը կանգնած էր որպես բյուրավին ուրիշը. Նա զգաց, որ աղջիկը չի ցանկանում հավատալ, որ ինքն այդպիսին է: Սակայն հանգիստ աչքերը լայն բացած, ծանոթ ու զարմացկոտ աղջիկը երկար չնայեց նրան, այդպես նա գեղեցիկ էր, բայց նա երկար չնայեց. պայուսակը թևատակին՝ անցավ նրա մոտով կարծես ամաչելով ինչ-որ բանի համար, ու գնաց: Աշոտը հասավ նրան:

— Ես չէի ուզում խնդրել: Չէի՛ ուզում խնդրել: Եթե դու չես ուզում՝ ետ վերցրու,— նա փողը դրեց աղջկա շրջազգեստի գրպանը: Նա ուզում էր հասկացնել, որ ինքը պահանջում էր, որ ինքը իրավունք ուներ պահանջելու, կարծում էր, թե ուներ:

Նվարդը ձեռքը տարավ գրպանը, շոշափեց հիսուն կոպեկանոցը, հանեց. փողը իրենք կնստեն միևնույն նստարանին, և եթե դասատուն իրեն դաս պատմելու կանչի՝ հնարավոր է, որ նա շշնջա իրեն. «Ձգձգի՛ր, մինչև ես սովորեմ», մի ուրիշ օր. հնարավոր է, որ այս ճանապարհով իրենք նորից միասին վերադառնան տուն, բայց հիմա նա գիտեր այդ ամենի արժեքը: Նա հանեց հիսուն կոպեկանոցը, չնայեց նրան, գցեց նրա ոտքերի մոտ, դարձավ ու գնաց:

Աշոտը կռացավ, վերցրեց փողը, այնուհետև նա չգիտեր, թե ինչ աներ: Նա զգաց, որ սխալ էր վարվել Նվարդի հետ, զգաց, որ այն, ինչ հիմա կատարվեց իր ներսում, ոչ մի կերպ չէր կարող հասկացնել նրան և մանավանդ՝ հավատացնել: Նա չգնաց աղջկա հետևից, փռռացնելով վեր նետեց հիսուն կոպեկանոցը, բռնեց, նորից վեր նետեց: Այդ գրավեց նրան, կարծես հետաքրքրեց. և թվում էր, թե նա թեթևակի ժպտում էր հենց դրա համար:

## Քնե՛ք, ծաղիկներ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Վերջացան հանդում
Արոտն ու սեզը.
Չի բուրում, ժպտում
Իմ լավ պարտեզը:

Սարյակս գնաց,
Չվեց կռունկը,
Եղյամով ժպտաց
Լեռան պռունկը:

Հարավի ճամփին
Սուզվեց ծիծառը,
Դեղնեց գետափին
Փոքրիկ իմ ծառը:

Մշուշն է գրկում
Բացատն ու ձորը,
Դաշտում չեն երգում
Ծղրիդն ու լորը:

Նուրբ ծաղիկներին՝
Անցնող աշունը
Ձայնով մտերիմ
Կարծես ասում է.

— Մրսեցրեք արդեն
Երկնի կապույտը,
Քնե՛ք, ծաղիկներ,
Աշու՜ն է, ցու՜րտ է:




ԱՇՈՏ ՓԱԼԱՆՋՅԱՆ

Ստվերախիտ անտառի միջով քայլում էր նա համարձակ ու վստահ։

Դա մեր հեքիաթի հերոս Սուրիկն էր։

Բարձրագագաթ արմավենիների կողքին նա այնքան պստիկ էր, այնքան կարճլիկ, որ թվում էր, թե կանաչի վրայով մի բզեզ է շարժվում։ Խիտ բույսերը փաթաթվում էին նրա ոտքերին ու մեջքին, բայց Սուրիկը չէր վհատվում։ Անտառի գեղեցկությունը, ծառերի մեղմ խշշոցն ու թռչունների երգը նրան ուժ ու եռանդ էին ներշնչում՝ շարժվել առաջ, գնալ ավելի խորքը, մոտիկից ծանոթանալ կենդանիների ու թռչունների հետ։ Ուսից գցած խաղալիք-հրացանը դիպչում էր ծառերի բներին ու շարունակ թրխկում։

Հանկարծ Սուրիկը կանգ առավ ու սկսեց ուշադիր վերև նայել։ Բարձր արմավենիների վրա ճյուղից-ճյուղ էին թռչկոտում կապիկները, ճարպկորեն մագլցում մինչև ծառի գագաթն ու նորից իջնում էին ցած։ Նրանցից մեկը թաթով կախվեց ճյուղից, մյուսը կպավ նրա ոտքից, երրորդը՝ վերջինիս պոչից, ու երեքով սկսեցին օրորվել։ Սուրիկը հիացած նայում էր վերև ու հրճվում։

— Ինչ լա՜վ է, հրաշալի՜ է, — բացականչեց նա, — ինձ էլ բարձրացրեք ծառի վրա, ես էլ եմ ուզում օրորվել ու զվարճանալ ձեզ հետ։

Եվ ահա՝ ա՛յ քեզ հրաշք... Նրա ցանկությունը կատարվեց. կապիկներից երկուսը իջան ծառից, բռնեցին Սուրիկի թևերից ու տարան վերև։ Ուրեմն, նրանք հասկանում էին մեր հերոսի լեզուն։ Մագլցելով նրա հետ ամենաբարձր արմավենու վրա, կապիկները Սուրիկին վերցրին իրենց գիրկն ու սկսեցին մեղմ օրորվել։ Անտառի զով քամին համբուրում էր տղայի այտերն ու խաղում նրա ոսկեթել մազերի հետ։

Երկար չանցած՝ անտառի այդ կենսուրախ բնակիչները իրենց նոր բարեկամին զգուշությամբ իջեցրին ծառից ու հեռացան։ Բայց նրանցից մեկը վերադարձավ, մոտեցավ Սուրիկին ու մեկնեց նրան մի արտասովոր միրգ։

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

— Սա ի՞նչ է, — հետաքրքրությամբ հարցրեց Սուրիկը։

— Հնդկընկույզ։ Նրա միջուկը քաղցր է ու համեղ։ Կոտրիր և անուշ արա։

Ասաց ու նորից հեռացավ։ Նայեց Սուրիկը վերև, դեպի արմավենիների ճյուղերն ու գագաթները, բայց ոչ մի կապիկ այլևս չէր երևում։ Բոլորը գնացել, անհետացել էին։

Նա ընկույզը կոտրեց և սկսեց ուտել։ Ճիշտ որ համեղ էր։

* * *

Լավ հանգստանալուց հետո, ոտքի կանգնեց Սուրիկը, հրացանն ուսն առավ ու ճամփա ընկավ։ Շատ գնաց թե քիչ՝ ինքն էլ չգիտեր, տեսավ, որ անտառը վերջանում է։ Դիմացը բացվեց հարթ ու լայնատարած, ծաղիկներով հարուստ մի կանաչազարդ հովիտ։ Ճերմակ շուշաններն ու կարմիր լալաները նազանքով օրորվում էին քամու թեթև շնչից, կարծես ողջունում Սուրիկին։

Մեր ճանապարհորդն ուրախությունից սկսեց ծափ տալ ու պարել։

— Այս շուշանները, այս կարմիր լալաները ինչ լա՜վն են, ինչ սիրու՜ն։ Քաղեմ ու մայրիկիս համար մի մեծ ծաղկեփունջ կապեմ, նա ծաղիկներ շատ է սիրում։

Ասաց ու անցավ գործի։

Բարձր սմբուլների մեջ նա նկատեց բնության բոլոր գույներն ունեցող մի արտասովոր ծաղիկ։

Մոտ վազեց Սուրիկը, կռացավ ու հենց ուզում էր բռնել՝ ա՜յ քեզ զարմանք, այդ հրաշագեղ ծաղիկը պոկվեց իր տեղից ու փախավ հեռու։ Դու մի ասի՝ դա գույնզգույն փետուրներ ունեցող թռչուն էր։

Կանգնեց այդ թռչունը, նայեց Սուրիկին ու ասաց.

— Ո՞վ ես դու, սիրուն տղա։

— Դու... դու ծաղիկ չե՞ս, — պատասխանի փոխարեն նույնպես հարց տվեց Սուրիկը։

— Ո՛չ, ես թռչուն եմ, թռչունների թագուհին։ Իմ անունն է Սիրամարգ։

Եվ Սիրամարգը բացեց հովհարի նման իր փարթամ, գեղատեսիլ պոչը, ապա երկու անգամ հպարտ քայլվածքով անցավ ու դարձավ Սուրիկի առջևով։

— Օ՜, դու շա՜տ, շա՜տ սիրուն ես,— բացականչեց Սուրիկը։ — Գնանք միասին մեր տուն, կապրես մեր փոքրիկ պարտեզում՝ ծառ ու ծաղկի մեջ։

— Չե՛մ գա, սիրուն տղա, մի՛ խնդրիր։ Ես այս հովտում ուրախ ու զվարթ վազվզում եմ ամեն օր ընկերներիս հետ, արևածագից մինչև ուշ երեկո։ Չե՛մ գա։

Հետո նա իր գունեղ փետուրներից մեկը նվիրեց Սուրիկին ու գնաց, անհետ կորավ ճերմակ շուշանների ու կարմիր լալաների հովտում։

* * *

Սիրամարգի փետուրը գլխարկին ամրացրած՝ շարունակեց Սուրիկն իր ճանապարհը։ Անցավ նա դաշտ ու հովիտ, սար ու ձոր, վերջը եկավ-հասավ մի թավշապատ մարգագետնի։ Հեռվում պսպղում էր պարզ ու բյուրեղյա լիճը։ Սուրիկը մոտեցավ լճափին, նստեց մի քարի վրա ու հարված նայում էր լճին։ Հայելու նման անդորր ջրերի վրա նազանքով լողում էին սև թռչուններ։

— Վա՜յ, այս ի՞նչ բան է, — զարմացած բացականչեց Սուրիկը. — ագռավներն ազատ լողում են ջրում։

Սև թռչուններից մեկը մոտեցավ ափին.

— Մենք հո ագռավներ չենք, կարապներ ենք, սև կարապներ։ Կուզես նստիր իմ մեջքին, սիրուն տղա, միասին զբոսնենք լճի վրա։

Կարապի առաջարկը Սուրիկին շատ դուր եկավ։ Նա իսկույն բարձրացավ թռչունի մեջքին։ Փաթաթվեց նրա վզով, ու նրանք երկուսով սկսեցին սահել զուլալ ջրերի վրայով։ Լիճն այնքան պարզ էր ու խաղաղ, որ լողացող ձկները մեկիկ-մեկիկ երևում էին ջրի ծալքերում, նույնիսկ հատակի ոսկեգույն ավազը կարելի էր համրել։

Հաճելի զբոսանքը կատարելուց հետո, Սուրիկն ափ իջավ։ Փչեց ուժեղ քամի, ալեկոծեց լիճը։ Կարապները դուրս եկան ջրից, բաց արին իրենց լայն թևերն ու թռան-հեռացան, անհետ կորան կապույտ երկնքում։ Սուրիկը հիացած նայում էր նրանց հետևից ու բղավում.

— Բարի ճանապա՜րհ...





Հեռվից ոչ հեռու, ցածրանիստ թփերի վրայով այս ու այն կողմ էր թռչկոտում մի ինչ-որ կենդանի: Մեր ճանապարհորդը շարժվեց դեպի թփուտն ու սկսեց հետաքրքրությամբ դիտել: Թռչկոտողը մի փոքրիկ ձագուկ էր՝ անհոգ ու զվարճասեր: Ոչ հեռու կանգնած էր նրա մայրը:

— Ես էլ կարող եմ քեզ նման թռչկոտել, — ասաց Սուրիկն ու վազեց, բայց հասնելով թփին՝ կանգ առավ: Ձագուկը ծիծաղում էր նրա վրա:

— Չի կարելի ծիծաղել ուրիշի վրա, — ասաց մայրը, — նա փոքր է ու անփորձ, իսկ դու արդեն գիտես ցատկել: Սովորեցրու նրան:

Ու երկուսով միասին՝ Սուրիկն ու ձագուկը սկսեցին ուրախ-ուրախ թռչկոտել, խաղալ: Քիչ անց, ձագուկի մայրն ասաց.

— Հոգնեցիք, այժմ հանգստացեք:

Երկու փոքրիկն էլ նստեցին թփի տակ: Սուրիկը գրկել էր ձագուկին, ու նրանք զրուցում էին միմյանց հետ:

— Ես մի ուլիկ ունեմ, — ասաց Սուրիկը, — նա էլ քեզ նման սիրում է ցատկել: Ամեն օր մեր տան պարտեզում թռչկոտում է ցանկապատի վրայով: Բայց դու մեր ուլիկի նման չես:

— Ես կենգուրու եմ, — հպարտ պատասխանեց ձագուկը:

— Այո, մենք կենգուրուներ ենք, — վրա բերեց մայրը, — արագավազ ու թռչկոտող: Վտանգի պահին ցատկելով-թռչկոտելով փախչում-հեռանում ենք ապահով տեղ:

— Հենց որ լսում է գիշատիչ գազանի մռնչյունը, — ավելացրեց ձագուկը, — մայրս ինձ դնում է իր պարկի մեջ ու փախչում:

— Ձեզ ո՞րտեղից պարկ, — ծիծաղեց Սուրիկը:

— Իմ ձագուկը սուտ չի խոսում, — պարզաբանեց մայր-կենգուրուն, — ես փորիս վրա պարկ ունեմ: Ահա տես: Կուզես նստիր նրա մեջ, քեզ մի քիչ ման ածեմ:

Ու վերցնելով Սուրիկին իր պարկի մեջ, կենգուրուն մի փոքրիկ պտույտ կատարեց դաշտում: Սուրիկի ուրախությանը չափ ու սահման չկար:

Օրն արդեն մթնում էր: Արևի վերջին շողերը ընկել էին լճի վրա, ու հեռվից թվում էր, թե ջուրն այրվում է: Հանկարծ երկինքը մթնեց, և ամպերն սկսեցին որոտալ, կայծակի սուր նետերը փայլատակում էին երկնակամարի վրա:

Մայր կենգուրուն դարձավ Սուրիկին ու ասաց.

— Արդեն ուշ է, դու պետք է վերադառնաս, մայրդ քեզ է սպասում: Հարկավոր է քեզ տուն հասցնել:

Երկար չանցած, կենգուրուն կանգ առավ Սուրիկենց պարտեզի դռանը:

— Հասանք, — ասաց խելացի կենդանին, — իջիր ու գնա ներս:

— Ես չեմ ուզում բաժանվել ձեզանից, — գրեթե լալով պատասխանեց Սուրիկը, — մնացեք մեզ մոտ, ապրեք մեր պարտեզում: Ես ամեն օր . . .

Սուրիկի խոսքերը մնացին անավարտ: Ամպի ուժեղ որոտի մեջ չքացավ նրա ձայնը: Մեր հերոսը ցնցվեց ու . . . արթնացավ:

Նա պառկած էր իր մաքուր, փափուկ անկողնում: Մահճակալի մոտ կանգնած էր մայրը՝ բարի ու հոգատար դեմքով և քնքշությամբ շոյում էր Սուրիկի մազերը:

— Մի վախենա, Սուրիկ ջան, ամպն է գոռում:

Սուրիկն արագ շարժումով նստեց մահճակալի մեջ ու զարմացած սկսեց նայել շուրջը:

— Մայրիկ, ո՞ւր գնաց կենգուրուն իր ձագուկի հետ: Նա քիչ առաջ այստեղ էր, մեր պարտեզի դռանը: Ի՞նչ եղան կապիկները, Սիրամարգը, սև կարապները . . . Մայրիկ ջան, ես նորից եմ ուզում գնալ նրանց մոտ . . . Անտառը, լիճը, հովիտը այնքան սիրուն էին, այնքան գրավիչ . . .

Մայրը գրկեց Սուրիկին, ջերմ համբուրեց նրան ու ասաց.

— Բալիկ ջան, այդ բոլորը քեզ թվացել է, երազ է եղել: Վաղը քեզ կտանեմ կենդանաբանական այգի, կտեսնես քո սիրած բոլոր կենդանիներին ու թռչուններին: Իսկ հիմա հանգիստ քնիր, դեռ անձրև է գալիս:

Եվ մայրը վերմակով ծածկեց Սուրիկին:

ՍԱՐՄԵՆ

## ՎԱՂՎԱՆ ՄԻ՛ ԹՈՂՆԻ

— Դա՞սըս սովորեմ,
Թե խաղի գնամ,—
Ասում է Նունեն.
— Զէ՛, տանը մնամ:

— Գնամ դուրս խաղա՞մ,
Թե դաս սովորեմ, —
Ասում է տղան՝
Անունը Սուրեն:

Նունիկը կարդում,
Դաս է պատրաստում,
Սուրիկը գնաց՝
Գնդակը գրկած...

Նունիկը խնդուն
Եկել է դասի,
Աչքերն են ժպտում
Նման փարոսի:

Սուրիկն է տրտում
Նստել իր կողքին,
Վախը իր սրտում,
Ականջը՝ վանգին:

Ասել է փոքրը,
Խոսքով գիտունի.
— Այսօրվա գործը
Վաղվան մի՛ թողնի:



## ԴԵՊԻ ԼՈՒՍԻՆ

— Երբ ես մեծանամ,
Կթռչեմ Լուսին,—
Ասում է Արան
Իր քույր Արուսին:

Արուսը լսում,
Դառնում է, ասում.
— Թե չտանես ինձ,
Մայրիկին կասեմ
Ու քո հետևից
Կգամ, կհասնեմ:

— Դե՛, ե՛լ, շուտ արա,
Գնանք միասին,—
Ասում է Արան
Աշխույժ Արուսին:

Եվ ուսը ուսի՝
Արուսն ու Արան
Թռչում են Լուսին,
Լուսնից՝ Վեներա:

## ՎԱՐԴԱՆ

Այսօր իմ բալես
Տուն եկավ վվարթ,
Այտերը ասես
Լինեն կարմիր վարդ:

Բերել է իր հետ
Գովասանագիր,
Հետն էլ նշաթերթ՝
«Հինգ»—երով անգին:

— Ապրե՛ս,—ասում եմ,—
Իմ խելոք Վարդան,
Արի համբուրեմ,
Իմ օրհնանքը տամ.

— Անես. վորանաս
Ոնց կաղնին փարթամ,
Քեզնով պարծենա
Երկիրն Հայաստան:

Նկ. ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

# ՍԱԳԵ՛Ր, ՍԱԳԵ՛Ր, ՏՈ՛ՒՆ ԵԿԵՔ...





ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Նանա՛ր, Նանա՛ր, տո՛ւն արի...

— Ինչու՞...

— Սագիկները քաղցած են։

— Ես ի՞նչ անեմ...

— Տար արածելու...

— Ջա՜ն, ջա՜ն, գալիս եմ... թռվռալով պատասխանեց Նանարը։

Այդ Աչիկն էր նրան կանչում. հիշո՞ւմ եք, այն աղջիկը, որի համար տատիկը, այծիկը, ծիտիկն ու ծաղիկները կոճակե-տիկնիկ պատրաստեցին, անունն էլ Նանար դրեցին։ Տիկնիկ-Նանարը տուն վազեց, ցցե-ցանկապատից մի ճյուղ պոկեց ու երեք փամփլիկ, սպիտակ սագիկներին առաջը գցած՝ բակից դուրս ելավ։

Դռան մոտ Աչիկն ասաց.

— Նանա՛ր, տե՛ս, սագիկները սարի կողմը չնայեն, գալար խոտով չտարվեն, գետից այն կողմ չվազեն. սարի հետևում գայլն է ապրում։

— Գա՞յլը, իսկ ո՞վ է գայլը։

— Մոխրագույն, չար գազան է, սուր ու ցից-ցից ատամներ ունի, աչքերն էլ ճրագների պես վառվում են, ում բռնում՝ իսկույն կուլ է տալիս։

— Շ... շատ լավ, սարի կողմը չեն նայի, գալար խոտով չեն տարվի, մյուս ափը չեն անցնի, — կակազելով պատասխանեց Նանարն ու ճիպոտը թափահարելով սագերին տարավ գետակ։

Օրը տաք էր, ջուրը զուլալ ու սառը. սագիկները իսկույն ցատկեցին ջուրը և սկսեցին գլուխկոնծի տալ, լողալ։ Նանարն էլ սկսեց կարմիր-կարմիր սալվիներ հավաքել մարգագետնում։

Բայց շուտով, սագիկները ջրում զովացան, խաղից կշտացան, նայեցին սարի կողմը, նկատեցին հյութեղ կանաչը և մոռացած Նանարին՝ վազեցին մյուս ափը։

Նանարը, երբ նկատեց նրանց, թողեց ծաղիկներն ու սկսեց բղավել.

— Սագե՛ր, սագե՛ր, տո՛ւն եկեք...

— Ինչի՞ համար։

— Գայլը սարի հետևն է...

— Մեզ ի՞նչ կանի...

— Ձեզ կուտի...

— Ո՛չ, ոչինչ էլ չի անի. նա հո աղվես չի, որ սագ ուտի, — պատասխանեցին նրանք

ու չքացան սարալանջի կանաչների մեջ:

Փոքրիկ Նանարը զարմացավ. նա գիտեր, որ խաղալիս, երեխաները վերջում «ղա-ղա» են կանչում ու տուն վազում: Բայց սագիկները հո երեխաներ չե՞ն... Տիկնիկ-Նանարը այդ մոռացել էր: Նա շատ փնտրեց գետափի ամենաբարձր եղեգնը, բարձրացավ վրան ու սկսեց ճոճել: Ճոճեց, ճոճեց ու մեկ էլ, հո՛պ, թռավ մյուս ափը: Վազվզեց խոտերի մեջ, փնտրեց թփերի տակ, բայց սագիկներին ոչ մի տեղ չգտավ: Մեկ էլ սարի ուսից մի մեծ, մոխրագույն գլուխ դուրս ցցվեց: Շողշողացին կրակե աչքերը, չխչխկացին սուր-սուր ատամները...

—Վա՛յ-վա՛յ, փախե՛ք, գայլը սարի հետևն է, փախե՛ք...—ճչաց Նանարն ու վազեց ետ: Եղեգնե սագերը թափվեցին գետն ու սկսեցին լողալ մյուս ափը, իսկ Նանարը չհասցրեց, և գայլը բռնեց նրան:

— Ախ՛, դու անպիտա՛ն աղջիկ, ինչու՞ փախցրիր իմ նախաճաշը, հը՞...

Նանարի լեզուն կապ էր ընկել. նա հազիվ կարողացավ կմկմալ.

— Ե... ե... ես,— ու գայլը, սարը, երկինքը աչքերի առջև պտտվեցին, պղտորվեցին...

— Հիմա՛ր աղջիկ, եթե դու կոճակե չլինեիր՝ ես քեզ, հա՛մփ, կուլ կտայի: Իսկ հիմա թռիր գետը, որ ուշքդ գլուխդ գա, հա-հա-հա՛,— հռհռաց գայլն ու Նանարին ջուրը նետեց:

Սագիկները եղեգնուտում միմյանց կծկըված՝ դողդողում էին: Նրանք լսեցին ջրի չըրմփոցը, հեռացող գայլի հռհռոցը ու, երբ նորից գայլը թաքնվեց սարի հետևում, իսկույն իրենց թաքստոցից դուրս վազեցին ու նետվեցին գետը: Նրանք սկսեցին լողալ, սուզվել ու փնտրել Նանարին: Քիչ հետո, գլուխները ջրից դուրս ցցեցին ու հարցրին միմյանց.

— Գտա՞ք...

— Ո՛չ...

Նորից սուզվեցին, նորից փնտրեցին ու նորից դուրս եկան.

— Գտա՞ք...

— Ո՛չ...

Երբ նորից սուզվեցին ու նորից դուրս եկան, այս անգամ արդեն ոչինչ չասացին, որովհետև նրանց կտուցները զբաղված էին: Մեկը՝ ոտից, մյուսը՝ ձեռքից, մյուսն էլ փեշից բռնած՝ Նանարին ջրից դուրս հանեցին: Հետո եղեգնից գլխիվա՛յր կախեցին նրան ու սկսեցին թափահարել: Եղեգը թափահարեցին, թափահարեցին, մինչև որ Նանարի կուլ տված ջուրը թափվեց, և նա սկսեց իր երկնագույն, նունուֆարե աչքերը բաց անել:

Սագիկները ուրախացան, թևերը թափահարելով, «Ղա՛-ղա՛-ջա՛ն-ջա՛ն...» կռկռացին: Նանարը ուշքի եկավ, սկսեց քամել ոսկեգույն մազերի ու շորերի ջուրը, իսկ սագիկները մեղավորի պես քաշվեցին մի կողմ ու սսկվեցին:

— Մյուս անգամ, երբ ձեզ կանչեմ. «Սա-



գե՛ր, սագե՛ր, տո՛ւն եկե՛ք», դուք ինչ պիտի պատասխանեք,— ասաց Նանարը:

— Ինչի համար...— կռկռացին սագիկները:

— Գայլը սարի հետևն է:

— Մեզ ի՞նչ կանի...

— Ձեզ կուտի՜: Իսկ դուք ինչ պիտի անեք:

— Ղա՛-ղա՛, ղա՛-ղա՛... ու՛ ... ու տո՛ւն կվազենք:

— Տեսեք, էլ չմոռանա՛ք,— ասաց Նանարը,— թե չէ, այլևս գետափ չեք տեսնի... Իսկ հիմա առանց ղաղաների, սուսիկ-փուսիկ տուն կգնանք, թող Աչիկը ոչինչ չիմանա, հասկացա՞ք:

— Ղա-ղա՛, ղա-ղա՛, հասկացա՛նք, հասկացա՛նք,— կռկռացին սագիկներն ու Նանարի հետ օրոր-շորոր տուն գնացին:

# ՀԱՐԵՎԱՆՆԵՐԸ

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Հավաքվեցին մեծ բակի
Հարևանները բոլոր,
Ու նստեցին կողք-կողքի
Սագիկ, բադիկ ու աքլոր,
Էլ ճտպտան ճուտ ու հավ,
Էլ չալ փիսո, էլ շնիկ,
Էլ շորորան հնդկահավ,
Էլ սագ քույրիկ ու մայրիկ:
Պարզաբանել են ուզում,
Թե այս թաղում ընդհանուր,
Ապրողներից այս բազում
Ո՞րն է կոկիկ ու մաքուր:

* * *

Բրդոտ շնիկը ելավ՝
Պոչը տնկած, դունչը ցից.
— Ե՛ս եմ,— ասավ,— հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ,
Մաքրասերը ամենից:
— Մյա՜ու, համա թե բան ասիր,
Դե արի ու մի բամբասիր...
Էլ ի՞նչ հող տամ գլխիս մազին,
Որ մաքրասեր դարձավ թազին:
Ճաշից առաջ, ճաշից հետո,
Ես թաթերս եմ մաքրում հերթով.
Մինչև անգամ Սոնա տատն էլ
Միշտ երդվում է իմ անունով:
— Ֆիհի՜, սրա՜ն մտիկ արա,—
Կլկլացրեց մի հնդկահավ.—
Համա թե բան է մեզ պատմում,
Էս մոլտան ու ծույլ կատուն:
Ամիսը մեկ, թե պատահի,
Մի շփոթված մուկ է բռնում
Ու գլուխն է գովում, տեսեք.
Սրան կասեք դուք մաքրասե՞ր...—
Մեկ էլ ահա ցեխակոլոլ դունչ ու վզիկ,
Մեջտեղ եկավ մի անշնորհք, քոսոտ խոզիկ
— Ձեզնից ո՞վ է իմ չափ լողում,
Բաղնիք գնում, քորվում, քերվում:
Դուք պապանձվել ու չեք խոսում,
Իմ մասին մի բառ չեք ասում:
— Հա՜, հա՜, հա՜, հա՜,— ծիծաղեցին
Ու բակով մեկ քրքջացին.—
Տունդ ծակվի, ա՛յ սներես,
Դեռ խոսելու երես ունե՞ս...

Որտեղ կեղտ ու ջուր ես գտնում,
Իսկույն ևեթ մեջն ես մտնում:—
Իսկ աքաղաղն հպարտ-հպարտ
Թռավ կանգնեց մի ցերանի
Ու ծուղրուղու կանչեց զվարթ.
Ձգած վզիկն իր գեղանի:
— Հե՜յ, աքլո՞րն եմ, ե՛ս եմ որ կամ,
Ձեր մոտիկը, ծեզ բարեկամ:
Փետուրների՛ս նայեք հապա,
Իմ նմանը աշխարհում կա՞...
— Կվա՜, կվա՜, կվա՜, կվա՜,—
Ծիծաղեց մի ճերմակ բադիկ.—



Համա թե դու գլուխ գովան,
Պարծենկոտն ես եղել սաստիկ.
Աղբակույտի մեջ լողանում,
Գարու հատիկ ես գողանում,
— Ճի՛շտ է, ճի՛շտ է,—աղմկեցին
Ու գովեցին մեր բադիկին.
Ու երբ որ մութն ընկավ արդեն,
Ելան մեկ-մեկ տուն գնացին:
Եվ այդպես էլ չպարզեցին,
Թե իրենցից ո՛րն է, իրոք,
Թե՛ մաքրասեր, և՛ թե խելոք:

# Ի՞ՆՉ ՄԵՂՔ ՈՒՆԻ ՀԱՅԵԼԻՆ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Մի մայր հավ կար։ Թուխս էր նստել տասը թե տասներկու ձվի վրա։ Բոլորն էլ իրար նման էին, մեկը քիչ մեծ, մյուսը քիչ փոքր, բայց և այնպես, սպիտակ, սովորական ձվեր էին։ Երբ ժամկետը լրացավ, ձվերից դուրս եկան ճտերը։ Դժվար էր դրանց տարբերել մեկը մյուսից։ Բոլորն էլ գողտրիկ էին, աչիկները՝ փայլուն, աղվամազը՝ փափուկ ու դեղին։

Հավաքվում էին մայր հավի շուրջը, կուտ ուտում, ջուր խմում, խաղում ու վազվզում։ Մի քիչ որ մեծացան, ունեցան իրենց յուրահատուկ փետուրները։ Հատկապես դրանցից մեկը աչքի էր ընկնում. սև էր և շողուն, մանուշակագույն խազեր ուներ փետուրների վրա։ Ինքը դեռ մի բան չէր, բայց ման էր գալիս հպարտ-հպարտ։ Պետք է ասել, որ նա և գեղեցիկ էր, և ճարպիկ։ Ամենից շուտ նա էր որդ գտնում, վազում էր բոլորից արագ, թառում էր ամենաբարձր տեղերի վրա ու չէր վախենում։ Մայր հավը նրան անչափ սիրում էր և երես տալիս։ Մի առավոտ, գրոսանքի ժամին, մայր հավը հայելու մի կտոր գտավ և նվիրեց իր սիրելի ճուտիկին։ Ճուտն ուրախացավ, ինքն իր շուրջը պտտվեց և խնդուն աչքերով նայեց իր քույրերին, թե՝ «տեսեք, տեսեք, ինչ նվեր ստացա»։ Հետո գոռոզացավ, աքլորացավ, այդ օրվանից էլ աքլոր դարձավ։

Մյուս ճտերն սկսեցին շատ հարգել նրան և անվանում էին ոչ այլ կերպ, քան Աքլոր Հավունի։ Հավունին ոչ մեկի ասածը բանի տեղ չէր դնում, ինքն էր, որ կար։ Նա հաճախ թառում էր ներտան կտուրին ու վերևից նայում ներքևում կչկչացող հավերի բազմու-

թյանը։ Նայում էր և հպարտորեն ցցում կարմրակատար գլուխը։ Նա հաճախ իրեն դիտում էր հայելու մեջ, ինքն իրենով հիանում ու փքվում։

Այդպես, անցան օրեր-օրերի հետևից։



Նկ. ՄԱՆՈՒԿ ԱՌԴՅԱՆԻ

Բակում հայտնվեցին ուրիշ աքլորներ, բայց Համոււնին նրանց հետ կռվեց քաջաբար, հաղթեց բոլորին և նորից իշխեց մեն-մենակ։ Նրա շուրջը հավաքված հավերը սկսեցին նրան գովել ու գովել։ Եվ չգիտես, բա՞կն էր պտտվում Աքլոր Համոււնու շուրջը, թե՞ նրա գլուխն էր, որ պտտվում էր։ Էլ ոչ առաջն էր նայում, ոչ էլ կողքը։ Առջևում ցեխ է, թե ջուր, մաքուր է, թե կեղտոտ՝ քշում էր առաջ։ Հավերը տեսան, որ Աքլոր Համոււնին ոչ այլ ոք է, եթե ոչ փնթի, ինքնահավան, ցուցամոլ մի որձակ։ Եվ բոլորն սկսեցին անկյուններում քչփչալ, գանգատվել։ Այդ քչփչոցները հասան նրա ականջին, և նա գայրացավ, շատ գայրացավ։ Ինչպե՞ս թե համարձակվեն իրեն քննադատել։ Ինքը բոլորից բարձրը է, բոլորից՝ խելոք, բոլորից՝ մաքուր ու գեղեցիկ։ Սակայն կասկածն ու վախը ընկան նրա սիրտը։ Նա վերցրեց հայելին և սկսեց ուշադիր զննել ինքն իրեն։ Ճիշտ որ, ցեխի մնացորդներ կան փետուրների վրա, հետո փետուրներն էլ ճմրթվածի պես են, մանուշակագույն խազերն էլ չեն փայլում առաջվա նման։ Աքլորը մտահոգվեց. չլինի՞ թե հավերը նայեն այս հայելու կտորին, տեսնեն, որ ինքը՝ հռչակավոր Համոււնին, կեղտոտ է և փնթի։

Մտածեց, որոշեց, թռավ բարձրացավ պատի վրա և այնտեղից ցած նետեց անպատկառ հայելին։ Հայելին ջարդվեց, և աղմուկի վրա հավերը մոտ վազեցին։

Համոււնին ցած թռավ պատից և հանդիսավոր քայլով գնաց ստուգելու կատարվածը։ Հավերը մի կողմ քաշվեցին ու ճանապարհ տվին։ Նա մոտեցավ ջարդված հայելուն, կռացավ և ի՞նչ տեսնի... Տասը թե տասներկու մանր հայելու կտորները առանձին-առանձին արտացոլում են իր կեղտոտ ու փնթի դեմքը։ Աքլոր Համոււնին ջղայնացավ, շա՜տ ջղայնացավ։ Բայց ի՞նչ մեղք ունեն հայելին։

# ՄԱՔՈՒՐ

ՎԻԿՏՈՐ

Ա՛յ Ամբակում,
Ա՛յ Ամբակում,
Ինչ ես պառկել
Փակ սենյակում,
Հաստ սրբիչը
Կապել ճտիդ,
Տաք ջեռակը
Դրել ճակտիդ,
Ձեռքով ծածկել
Քիթ ու երես,
Ասա, ի՞նչ է
Պատահել քեզ:

— Արամիկ ջան,
Նստիր մոտս,
Թուլացել են
Ձեռ ու ոտս,
Ամբողջ օրը
Հաց չեմ կերել,
Հա՜ ուզում եմ
Պառկել, քնել,
Խեղճ գլուխս
Վա՜յ, ուղղակի,
Քիչ է մնում՝
Թե տրաքի...

## ՕԴԸ

ՎԱՐԴԱՆՅԱՆ

— Ա՛յ տնաշեն,
Հո փոքրիկ չե՞ս,
Վնասել ես
Դու ինքդ քեզ.
Էս շոգ օրին
Տաք-տաք հագել,
Դուռ, լուսամուտ
Պինդ-պինդ փակել.
Ո՞նց ես պառկել
Դու էս տանը.—
Ու բացում է
Պատուհանը:

Պատուհանը
Բացվելուն պես,
Մաքուր օդը
Խուժում է ներս:
Մաքուր օդն է
Դառնում դեղը,
Դեմքի գույնն է
Գալիս տեղը.
Գլխի ցավն է
Իսկույն անցնում,
Ախորժակը
Ո՛նց է բացվում...

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

## ԳԺԻ՛Ր, ՔԱՄԻ

Ժայռը՝ ահեղ, կածանը՝ լար,
Մշուշը՝ բուրդ, քամին՝ գզրար...
Գզիր, քամի, անտուն քամի,
Գիշեր-ցերեկ արթուն քամի,
Գորգեր հյուսիր դու կապուտակ,
Փռիր գարնան ոտքերի տակ:





## ՔԱՄԻՆ

Երբ երգեր է սուլում սարին՝
Ամպի շորեր հագած,
Երբ էլ ոտքը զարկում քարին,
Ջուր է ընկնում հանկարծ:

Երբ ոռնում է սարի լանջին,
Երբ գզվում է փոսում,
Երբ էլ գալիս և ականջիդ
Շշուկով է խոսում:

Երբ գալիս է, ուժն է փորձում
Քերծերի հետ անտառ,
Երբ էլ հանկարծ միտքը փոխում
Ու գնում է անտառ:

Երբ դողում է ահից այնպես,
Որ ճաքում է լեղին,
Երբ քշում է, հաղթողի պես,
Իր ավարը դեղին:

Երբ խնդրում ես՝ մոտդ մնա,
Չեմուչում է անում,
Երբ ուզում ես՝ թողնի գնա,
Մռնչյուն է հանում:

Թող հիանա նա իր երգով...
Էհ, գլուխը քարին,
Չես իմանա՝ վերջ ի վերջո
Ի՞նչ է ուզում քամին



# ԱՌԱՋԻՆ ՀՈՒՆՁԸ

ԼԵՎՈՆ ԶԱՔԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

*Առջևից քայլում էր օղակավար Սարգիսը՝ արահետ բանալով մինչև ծնկները հասնող փարթամ կանաչի միջով։ Ցողը առատորեն թրջում էր նրա ոտքերը, ճկուն սիզախոտերը փաթաթվում էին տաբատի փողքերին։ Ուղին ձգվում էր միշտ վեր ու վեր, բայց նա շարունակում էր ընթանալ նույն խոշոր ու հաստատուն քայլերով։ Նրա ուսերի հետ վեր ու վար անող գերանդու շեղբին բռնկվում էին պողպատի պաղ կրակներ։*

*Օղակավարի հետևից քայլում էին Կարենը, Աշոտը, Սուրենը, Հրայրը... Պատանիների շարքը եզրափակում էր Արտակը։*

*Այդպես էր միշտ՝ առջևում Կարենը, վերջում Արտակը։ Դե այդ բնավորության հարց է միայն։ Ծովափերում Արտակը երբեք չէր թողնի, որ մեկն ու մեկը իրենից առաջ անցներ, բայց ահա ֆուտբոլային խաղերում կենտրոնի հարձակվողը միշտ Կարենն էր լինում, իսկ Արտակը պաշտպանում էր խոր թիկունքը։*

*Ձմռանը ավագ դասարանցիների դեմ ձնագնդակով կռվելիս՝ Կարենն ամենահանդուգն գրոհներն էր ձեռնարկում, մինչ Արտակը ետ քաշված՝ ձնագնդակ էր հասցնում ընկերներին։ Երբ խմբով գնում էին գյուղից ցած՝ գետի ծանծաղուտ հատվածներում լողալու, Կարենն առաջինն էր նետվում ջրի անծանոթ խորության մեջ...*

*Այսօր տղաների համար ուրախ օր էր. կոլտնտեսության օղակավարի հետ նրանք հնձի էին գնում դեպի հեռավոր խոտհարքները։ Գնում էին առաջին անգամ։*

*Արտակը հափշտակված դիտում էր նորածագ արևի շեղ ճառագայթներով լցված լեռնային խորությունները, որոնք քիչ առաջ մթամած էին ու ահագնալի, իսկ հիմա դարձան պայծառ ու թեթև, գրեթե թափանցիկ, դարձան լուսեղեն հովիտներ, որոնց հատակում շողում էին վտակների ոսկե ժապավենները։*

*Արտակը ինքնամոռաց դիտում էր շուրջը ու չէր նկատում տղաների անհոգ շաղակրատանքը։ Միմյանց ընդհատելով՝ նրանք դատարկեցին իրենց իմացածի ամբողջ պաշարը երկնային մարմինների մասին։ Այդտեղից անցան տիեզերական թռիչքներին, ու բանից դուրս եկավ, որ տղաներին առանձնապես հուզում էր, թե ինչպես է գործում տիեզերանավի արգելակման սիստեմը...*

*— Իսկ կարո՞ղ եք ասել՝ սա ի՞նչ ծաղիկ է,— խոսակցությանը միջամտեց օղակավարը, որ մինչ այդ լուռ լսում էր։*

*Նա պոկեց մի ծաղիկ ու պարզեց տղաներին։ Արտակը սթափվեց, նայեց կապույտ ծաղկին, որի նրբին բաժակում արցունքի պես շողում էր ցողի դողդոջուն, մեծ կաթիլը։*

*— Դա՛հ, վայրի ծաղիկ է, էլի՛... Այնքա՜ն ենք քաղել ու նվիրել աղջիկներին,— ասաց Կարենը՝ աչքով անելով ընկերներին։*

*— Քաղած կլինեք։ Բայց ի՞նչ է անունը,— համառեց օղակավարը։*

*— Անու՞նը... Աշոտ, դու ես մեր միջի բնասերը, գիտե՞ս։*

*Աշոտը բացասաբար շարժեց գլուխը։*

*— Տեսնում եմ, որ չգիտեք։ Տերեփուկ է։*

*— Տերեփո՞ւկ,— կամաց ծիծաղեց Արտակը։— Այդ հո բանաստեղծություններից գիտենք...*

*— Իսկ սա ի՞նչ ծաղիկ է։*

*Այս անգամ տղաները Սարգսի կոշտ մատների արանքում տեսան կաթնաճերմակ թերթերով,*



տուեջքի շուրջը դեղնավուն, բուրաշ մի ծաղիկ։

— Չգիտենք,— անվրդով հայտարարեց Կարենը։

— Աստղերին հասել եք, իսկ մանկուց տեսած բույսերի անունները չգիտեք։ Սա ի՞նչ բան է։

Սարգիսը կռացավ, խոտերի միջից վերցրեց մի փոքրիկ բարակոտ, որն արևի տակ երփնում էր մանիշակագույն, նարնջի, ճերմակ երանգներով։ Տղաները ձեռքից ձեռք փոխանցեցին այն և թոթվեցին ուսերը։

— Տեսնում եմ, որ գրքեր շատ եք կարդացել, բայց, ա՛յ, ա՛յս մեծ գիրքը չեք կարդացել...

Արտակը նայում էր տղաների գլուխներից վեր բարձրացող օդակավարի հաղթ ուսերին, ու թվում էր՝ տեսնում է ինչ-որ գրքում հանդիպած տոհմի առաջնորդին, որ գիտե՛ր հավքերի ու գազանների լեզուն, գիտե՛ր, թե որ խոտով ինչ ցավ կարելի է բուժել, գիտե՛ր, թե երբ անձրև կգա, եղնիկները երբ կանցնեն գետի ջուրը տանող խոնային նեղ կածանով։

Տղաները լուռ էին։ Յուրաքանչյուրը տարված էր իր մտքերով։

Վերջապես օդակավարը կանգ առավ մենավոր մայրենու մոտ, գերանդին ցած դրեց ուսից, մի թոթվումով թևը ազատեց ուղեպարկի փոկից։

— Սկսե՛նք այստեղից։ Տեսնո՞ւմ եք այս բոլորը,— Սարգիսը ձեռքի հուժկու շարժումով մի շրջան գծեց՝ ցույց տալով ընդարձակ տարածությունը,— այսքանը երեք օրում պետք է հնձենք։ Ինձ ձե՛զ տեսնեմ, տղե՛րք ջան, այնպես անենք, որ ոչ մի փունջ խոտ չմնա։ Այսպիսի օրերի համար են ասել, թե օրը տարի կկերակրի... Հիմա ի՞նչ եք ասում, տղերք, սկսե՞նք, թե ուզում եք դեռ հանգստանալ։

— Սկսե՛նք, սկսե՛նք,— ձայնեցին տղաները։

— Ես, ի՞նչ իմանամ... Ախր՝ ուսումնական տղերք եք, գրքի ու գրչի սովոր, գուցե այս բանում դժվարանաք...

— Սպասի՛ր, դեռ կտեսնես, թե ուրիշ ինչի ենք սովոր։ Ճամփա ընկիր, հետևիցդ գալիս եմ...— աչքերը չարաճճի շողացնելով՝ առաջ եկավ Կարենը։

— Շատ մեծախոսն ես երևում, Մեծատուրենց տղա։ Տեսնենք՝ կուռդ էլ կհասնի՞ լեզվիդ հետևից...

Սարգիսը թաշկինակի չորս անկյունները հանգուցեց ու դրեց գլխին, բշտեց թևերը, կոշտապատ ափերի մեջ առավ գերանդին և առաջ անցավ։

Պատանիները միաժամանակ հետևում էին օդակավարի աշխատանքին։ Գերանդու շեղբը հստակ կշռույթով լայն կիսաշրջաններ էր գործում, մի պահ ազատ շողում արևի տակ, ապա գվարթ սույլով մտնում ցողունների մեջ՝ բեկված խոտերը պառկեցնելով մի կողքի։

Նայում էր Արտակը հնձվորի ձուլածո կերպարանքին, անսովոր ուժ և զարմանալի թեթևություն արտահայտող հստակ շարժումներին, ու թվում էր՝ հանդարտ ու հանդիսավոր չափով գրված շեշտական ոտանավոր է կարդում։

Քայլ առ քայլ առաջանում էր հնձվորը՝ հետևից թողնելով քանոնի պես ուղիղ գծված կանաչ միջանցք, որի ձախ կողմի երկայնքով ձգվում էր նույնքան ուղիղ գծով դարսված շարը։

Պատանիների աչքում օդակավարը մեկեն կերպարանափոխվել էր. ինչպե՞ս էր նա կարողանում այդ պարզ աշխատանքի մեջ այդքան գեղեցկություն ու ոգևորություն դնել։

Երբ բավական առաջանալուց հետո Սարգիսը շրջվեց ու փորձառու աչքով նայեց իր հետևից եկող պատանի հնձվորին, սրտանց ուրախացավ։

— Ապրե՛ս, շա՛տ ապրես, Մեծատուրենց տղա։

Կարենը կարծես չէր լսում նրան։ Աչքերը հառած ծփացող կանաչ տարածությանը, ռունգերում՝ հնձվող խոտի թարմ բույրը, առաջանում էր նա, չնկատելով, որ բարձրացող արևը անողորմաբար այրում է թիկունքը։ Քրտինքի կաթիլները գլորվում էին դեմքին ի վայր և ընկնում խոտերի մեջ՝ ակնթարթաբար ցոլալով շողակների պես։

Կարենի հետևից գալիս էին Հրայրը, Աշոտը, Սուրենը...

Շարքի ծայրում հնձում էր Արտակը։ Նա առաջին անգամ էր գերանդի բռնում։ Քիչ առաջ, երբ հայացքով հետևում էր մյուսների աշխատանքին, ամեն բան թեթև ու հեշտ էր թվում։ Իսկ հիմա հազիվ էր հնձելով անցել մի փոքր տարածություն և արդեն զգում էր, որ ամեն քայլի հետ շնչելը դժվարանում է։ Մատները ցավեցնելու չափ ամուր սեղմել էր գերանդու կոթին, բայց ամեն րոպե այն պատրաստ էր ոլորվել ափի մեջ։ Խոտերի դալար ցողունները, որ մինչ այդ այնքան փափուկ ու դյուրաբեկ էին թվում, կարծես դիտմամբ վճռել էին տեղի չտալ ու ամեն անգամ

փաթաթվում էին գերանդու շեղբին, համառում, արգելակում։

Արտակը հուսահատությամբ տեսնում էր, որ ընկերներից իրեն բաժանող տարածությունը գնալով մեծանում է, իսկ բազուկներն արդեն հոգնել էին, շուրթերի վրա զգում էր քրտինքի դառնաղի համը։ Լուսաջինջ ցերեկը, որ առավոտից երգի նման զնգում էր նրա սրտում, մեկեն կարծես կորցրել էր իր գեղեցկությունը։

— Այդ ո՞վ էր,— քարին զարկվող պողպատի զնգոցի վրա ետ նայեց օղակավարը։

Արտակը ամոթից ձայն չհանեց. գլխիկոր ու շվար նայում էր գերանդու ծռված բերանին։ Ո՞րտեղից դեմ ելավ այդ անիծյալ քարը...

* * *

Պառկած է Արտակը անկողնում, ձեռքերն առել է գլխի տակ ու նայում է պատուհանի մութ շրջանակով հատված երկնքի կտորին։ Դրսից հասնում են զարթնող օրվա ձայները։ Մերթ ընդ մերթ հնչում ու մարում են հանդ գնացող մարդկանց ընդհատ խոսքերը։ Մեկը անխույթ ու անշտապ ինչ-որ բան է պատմում. նրա ձայնի թավ դողանջը կորչում ու հայտնվում է կանացի քրքիջների ալիքի միջից։ Խլացնելով բոլոր ձայները՝ ներս է խուժում կովի հուժկու բառաչը. արոտ մեկնող մայրն է կանչում հորթուկին։ Փոշոտ սրարշավ մի ձիավոր անցավ։ Երևի քեռի Ասատուրն է գնում աղբյուր, որ տակառով ջուր վերցնի՝ անջուր հանդի հնձվորներին հասցնելու համար։

Արտակը ունկ է դնում բացվող օրվա զվարթ ձայներին ու հանկարծ անդիմադրելի փափագ է զգում՝ դուրս վազել, գնալ միանալ հանդ շտապող մարդկանց խմբերին...

Երեկոյան նա հոգնած ու անտրամադիր վերադարձավ տուն, ընթրեց և շտապով անկողին մտավ՝ մտքում վճռելով, որ առավոտյան էլ հանդ չի գնա ընկերների հետ։ «Ինձնից հնձվոր դուրս չի գա»— դառնացած մտածեց նա՝ վերմակի տակ փոխն ի փոխ շոշափելով ափերում հայտնված բշտիկները։ Այսպես պատահում է աշխատանքի անսովոր ձեռքերի հետ։

Ընկերները մինչև երեկո լավ բանեցին, իսկ ինքը ժամերով նստել էր մարգենու ստվերում ու նայում էր, թե ինչպես են երկարում հնձած խոտի զուգահեռները։ Դեռ լավ էր, որ պետք էր ջուր բերել մոտակա ձորից. սիրով նա անվերջ կիջներ ու կելներ ձորը, միայն թե ստիպված չլիներ նըստել ու սպասել, թե արևը երբ կթեքվի մայրամուտ։

Ընկերները չծաղրեցին նրան, բայց տեղին չէ՞ր լինի, եթե վրան մի լավ ծիծաղեին։ Գյուղում մեծացած տղա է ու հնձել չգիտե։ Տեսնես տղաներն ի՞նչ են անում հիմա։ Հավանաբար իրեն են սպասում։ Չգիտեն, որ վճռել է տանը նստել։ Կսպասեն, կսպասեն ու առանց իրեն ճամփա կընկնեն։ Երեկվա պես կքայլեն շաղոտ խոտերի միջով, և ծայր կառնեն զրույցն ու կատակները։ Ինչ լա՜վ էր երեկ հանդում։ Արտակը կարծես նորից զգաց գիշերվա քնից արթնացած ծաղիկների թարմ բույրը, ծաղկաբաժակներն ու ցողունների հանգույցները լցնող ցողի զովությունը, կանաչ լեռնաստանի վրա կամար կապած երկնքի կապույտ մաքրությունը...

— Արտա՛կ, արթնո՞ւն ես, չե՞ս ուշանում...

Մայրն էր հուշիկ քայլերով սենյակ մտել։

— Ես իսկույն վեր կկենամ, մայրի՛կ,— տրամադրության արագ դարձումով զվարթացած պատասխանեց Արտակը։ Առույգ ու թեթև մի շարժումով նա վերմակը մի կողմ նետեց ու ցատկեց հատակին։ Չորս կողմը ջուր շաղ տալով՝ արագ լվացվեց, վերցրեց գերանդին ու մոր պատրաստած նախաճաշը և դուրս թռավ։

Գյուղից դուրս Արտակը հեռվից նկատեց ընկերներին։

— Կարե՞ն, գալի՞ս եմ,— ափերը խողովակաձև բերանին դրած՝ կանչեց Արտակը։

Վաղորդյան օդի հստակության մեջ նրա ձայնը դողանջեց արծաթյա զանգակի պես։

Տղաները լսեցին, կանգ առան։ Արտակը գրեթե վազելով էր բարձրանում բլրալանջն ի վեր, աչքը չկտրելով տղաների խմբից, որ հուժկու գծերով ուրվանկարվել էր երկնքի լուսավոր պաստառին։ Նրանց մեջ վեր էր բարձրանում օղակավարի հսկա կերպարանքը։

Արտակը արդեն ոչ թե վազում, այլ վիթի պես թռչում էր դեպի լուսապսակ կատարը։ Քիչ էր, քիչ էլ։ Ու հետո քայլեցին միասին...



# ՓՈՍՏԱՏԱՐ

ԳԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Փոստատար եմ, փոստատար,
Շրջում եմ ես անդադար,
Բերում նամակ, լրագիր,
Ծանրոց, փաթեթ, հեռագիր։
Ամեն-ամեն նորություն
Միշտ էլ ես եմ բերում տուն։
Ահա՛ «Պրավդա», «Երևան»,
«Սովետական Հայաստան»,
«Պիոներ», «Ոզնի», «Մուրզիլկա»,
Ի՞նչ, «Կրոկոդի՞լ», այդ էլ կա։

Կզարմանաք ուղղակի.
Քանի՛-քանի՛ քաղաքից
Նամակներ են ստանում։
Ա՛յ, նորից եմ ես տանում։
Ծրարներ կան Մոսկվայից,
Լենինգրադից, Ուֆայից,
Նույնիսկ սխալ չի լինի,
Եթե ասեմ Բեռլինից,
Կահիրեից հեռավոր...
Զարմանալու ի՞նչ կա որ։
Միշտ խնդրում են՝ բե՛ր, հա բեր,
Բաց են անում անհամբեր,
Որ իմանան՝ աշխարհում
Մարդիկ ինչպե՛ս են ապրում.
Ի՛նչ կա և ի՛նչ կլինի
Նաև երկրում հայրենի։

Խելոք աղջիկն ու տղան
Ուղարկում են պատասխան
Նամակով կամ հեռագրով
(Ի՛նչ խոսք, մաքուր ձեռագրով)։
Ասենք՝ գրում ես մեկին
Լոնդոն, Փարիզ կամ Պեկին,
Կամ թե որդուն քո քեռու,
Որն ապրում է շատ հեռու։
Կուզեի՞ր որ շուտ տային.
Վրան գրիր՝ «Օդային»։
Ծանոթներին քո բոլոր
Դու կարող ես ամեն օր
Լուր ուղարկել նամակով՝
Օդով, ջրով, ցամաքով։

Առանց փոստի կյանք չկա,
Իմ պայուսակն է վկա։



Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# ՀԱՄԵՐԳ ՄԱՐՍԻ ՎՐԱ



Գարուն

ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ԼԵՎՈՆ

(Երևան, № 96 դպրոցի աշակերտ, 10 տարեկան)

Մրցանակաբաշխության նյութերից

Առավոտ էր։ Արևի առաջին շողերն ընկել էին լուսամուտից ներս։ Այդ օրը ես ու քույրս պետք է գնայինք համերգի։ Բայց դա սովորական համերգ չէր։ Այն տեղի էր ունենալու Մարսում։ Ես արդեն երկու անգամ եղել էի այնտեղ, իսկ քույրս՝ ոչ։

— Դե, երբ ենք գնալու, արդեն ժամը մեկն է, — արտնջում էր նա։

— Ի՞նչ կարիք կա շտապելու, ժամը երեքին ենք մեկնելու։

Տեսնելով, որ չեմ համոզվում, նա բերեց լրագիրը։

— Նայիր, գրված է, որ այդ երգիչը արտասովոր ձայնով գերազանցում է Երկրի, Յուպիտերի և Մարսի երգիչներին, իսկ եթե ուշանանք, չենք տեսնի նրան։

Այնքան արեց, որ մեկ անց կես չկար՝ դուրս եկանք տանից։ Երբ հրթիռակայանից գլխապտույտ արագությամբ դեպի Յուպիտեր թռավ մի հրթիռ, քույրս շրջվեց դեպի ինձ և ասաց.

— Լավ չի՞ լինի վերադառնանք տուն։ Գլուխս ցավում է։

— Վախեցա՞ր։

— Չէ, բայց...

— Վախկոտ։

— Դու ես վախկոտ։

— Ինչպես չէ, այ, ես հիմա կնստեմ տիեզերանավ, կթռչեմ Մարս, համերգը կլսեմ, իսկ դու կմնաս այստեղ։

Երբ քույրս տեսավ, որ մարդկանց ուշադրությունը իր վրա է գրավում, լռեց։ Այդ ժամանակ վայրէջք կատարեց դեպի Մարս տանող մի հրթիռ։ Այնքան բարկացած էի, որ չնայեցի անգամ համարին և նստեցի։ Իմ հետևից ներս մտավ քույրս և նույնիսկ այդ ժամանակ ակնարկեց.

— Ինձ ուզում էին թողնել ներքևում...

Միակ բանը, որ մեքենայացված չէր, դա այն կինն էր, որ հավաքում էր տոմսերը։ Նա մեզ էլ մոտեցավ, վերցրեց մեր տոմսերը, ուշադիր զննեց ու ասաց.

— Դուք ճիշտ չեք նստել։

— Ինչպե՞ս թե...

— Դուք պետք է մյուսը նստեիք:

— Տեսա՞ր, բոլորը քո պատճառով,— հարձակվեց քույրս:

— Դեռ ասում ես իմ պատճառո՞վ: Իմ պատճառո՞վ ժամը մեկին դուրս եկանք տընից, իմ պատճառո՞վ, վախկոտ, ուզում էիր վերադառնալ, իմ պատճառո՞վ շփոթվեցի,— բարկացա ես:

— Քեզ ո՞վ էր ասում ժամը մեկին դուրս գայիր կամ շփոթվեիր:

— Դու:

— Ի՞նչ է, դու գլուխ չունե՞ս ուսերիդ վրա:

Ես հարկ չհամարեցի պատասխանել: Լուսամուտից դուրս նայեցի: Հեռվում աղոտ կերպով երևում էր մի փոքրիկ գունդ: Քույրս ոչ մի կերպ չէր ուզում հավատալ, որ դա Երկիրն է:

Կատակելով և ուրախանալով հասանք: Այնտեղ մեզ սրտաբաց ընդունեցին: Առաջարկեցին մեքենա նստել:

— Նստե՞նք,— հարցրեց քույրս:

— Եթե պիտի մեքենա նստեի՝ տանն էլ կնստեի:

Մեզ տվեցին չորս ուղեկցորդ: Մարսի մայթերով քայլում էինք շատ թեթև, որովհետև Մարսի ձգողական ուժը շատ ավելի քիչ է, քան Երկրինը: Մտանք մի պողպատու այգի: Ուղեկիցն ասաց.

— Սա մեր պուրակն է:

— Ձեր պուրա՞կը,— զարմացած հարցրին Մարսում առաջին անգամ եղողները:

— Այո, մենք միայն պողպատու ծառեր ենք տնկում:

Վերջապես հասանք համերգի վայրը: Նըստեցինք նստարաններին և սկսեցինք դիտել շրջապատը: Համերգը տեղի էր ունենալու բացօթյա: Բեմը շրջապատված էր կապույտ բներ և սպիտակ տերևներ ունեցող ծառերով: Համերգը սկսելու ժամանակն էր, բայց երգիչը չկար: Հինգ րոպեից հետո նա հայտնըվեց, ներողություն խնդրելով ուշացման համար և սկսեց համերգը: Բյուրավոր աչքեր սևեռված էին նրա վրա: Այդ վեներացի երգիչը, իրոք որ, գերազանցում էր բոլոր երգիչներին: Երգում էր հիանալի:

Համերգից հետո, գոհ մեր կատարած ճանապարհորդությունից, վերադարձանք Երկիր:

ԿԱՐԻՆԵ ՔՈՋԱՐՅԱՆ

(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտ, 15 տ.)

# ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ

Մի աննման աղբյուրի պես
Բխել է մեր հայոց լեզուն,
Առվակի պես մեկ նվազել,
Մեկ դարձել է ջինջ ու խոսուն:
Շարան-շարան տարիների
Ու դարերի հետ մեր բազում,
Հնչել է միշտ ու հմայել
Քաղցրահնչյուն հայոց լեզուն:
Երբ զգում է իմ մայրենի,
Հոգուս կրակ հայոց լեզուն,

Ասես ջանգուն է իմ վճիտ
Դաշտերի հետ ուրախ խոսում:
Եվ մոր նման քնքուշ ու հեզ.
Հեզահամբույր ու սիրասուն.
Փայփայում է հոգիս մանուկ.
Իմ նազելի հայոց լեզուն:

ՀԵՆՐԻԿ ԲԱԽՉԻՆՅԱՆ

(Թբիլիսի, 6-րդ դաս. աշ.)

# ՆՈՐ ՍՄՈԼԱՆԴԻԱՅԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

ՊՐՈՖԵՍՈՐ ԼՎԱԲԵՐ ՀԱՐՈՆՅԱՆ



Նկ. ԱՐՏՈ ՉԱԳՄԱՔՉՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ԵՍ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄ ԵՄ ՆՈՐ ԵՐԿԻՐ

*Մեկնումը նշանակված էր իմ հանգուցյալ մորաքույր Էրիկայի ծննդյան օրը՝ հուլիսի 8-ին։ Ստոկհոլմի նավահանգիստն էին հավաքվել բազմաթիվ մարդիկ, քաղաքի ղեկավարների գլխավորությամբ։ «Նեզարան» (այդպես էի անվանել նավը ի պատիվ ուտիճների ընտանիքի, որոնց նվիրված էր իմ դոկտորական դիսերտացիան) անհանգիստ ձգում էր կապը, իսկ իմ կոլեգան՝ գործերի նշանավոր մասնագետ Փտարմատը, մի հուզիչ ճառ էր արտասանում։*

*— Ո՜վ դու, կապուտաչյա՜ վիկինգ, միջատաբանության անվեհե՛ր ասպետ, մենք մտքով քեզ հետ ենք արշավում, — ասաց նա։*

*— Ճամփա ընկիր, թիթեռնացանցը՝ ձեռքիդ, իսկ խիզախությունը՝ կրծքումդ, և քո նոր, համարձակ ճանապարհորդությունը թող թույլ տա մեզ ավելի խորը թափանցել դեպի հնության գաղտնիքները և մի անգամ էլ փառքով պսակիր հայրենիքիդ անունը։ Բարի ճանապա՜րհ, Լվաբե՛ր Հարոնյան։ Չմոռանաս հաճախ բացիկներ ուղարկել ճանապարհից և, եթե հետաքրքիր գործեր հանդիպեն քեզ, հիշի՛ր ինձ։*

*Փղձուկը կոկորդումս հեռացա։ Ճանապարհորդությունը սկսվեց։*

*Ստոկհոլմից դուրս գալուց 97 օր հետո հասա Քեյպտաուն։ Այնտեղ ես մնացի ընդամենը երկու շաբաթ։ Հետո ինդոնեզական ծովերով, արևի այրող ճառագայթների տակ «Նեզարան» Մանոկվարիից եկավ Նոր Գվինեա։*

*Ինչպիսի հուզիչ օրեր էին։ Ես չէի հավատում սեփական աչքերիս։ Մանոկվարիից դուրս գալու 11-րդ օրը հորիզոնի վրա ցամաք նկատեցի. մեծ լեռնոտ կղզի։ Դա մեծագույն ակնթարթ էր իմ կյանքում։ «Լվաբեր Հարոնյան, — ասացի ինքս ինձ, — դու Նոր երկիր ես գտել»։*

*Հաջորդ օրն առավոտյան սրտի բախյունով դեպի կղզին ուղղվեցի։ Զմայլելի գեղեցկություն ուներ. իսկական մերձարևադարձային կղզի. հրաբխային երկնագույն գագաթներով, մշտականաչ թավուտներով ու արմավենիներով ծածկված ափով։ Ինչպիսի՞ գաղտնիքներ են ինձ սպասում առջևում։ Ի՞նչ են ծածկում այս անանցանելի անտառները և վայրի լեռները։ Այդ հարցին պատասխանելը վիճակվել էր ինձ։*

## ԵՐԿՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ԻՄ ԱՌԱՋԻՆ ՀԱԶՎԱԳՅՈՒՏ ՈՐՍԸ

*Հայտնագործած կղզին անվանեցի Նոր Սմոլանդիա։*

*Բնակավայրի ոչ մի նշույլ. ավազի վրա ոչ մի հետք, ծովում ոչ մի նավակ... Նոր Սմոլանդիան անբնակ է։ Համենայն դեպս վերցրեցի բրաունինգը, կապեցի փամփուշտների գոտին, հետո մի շալաշ կանգնեցրի ափին և «Նեզարանից» տեղափոխեցի մթերքն ու հանդերձանքը։*

*Այսքան տանջանքներից քաղցածանալով, ես որոշեցի բրնձի շիլա եփել, երբ հանկարծ անծանոթ տեսակի մի թաղանթաթևավոր փայլեցք արեց բթիս, ցանկանալով մաքրել թևերը*



Զգուշությամբ սողացի դեպի թիթեռնացանցը, բայց հազիվ էի հասել, երբ թաղանթաթևավորը քթիս վրայից թռավ։ Վագրի նման պոկվեցի միջատի հետևից, բայց իմ ոտքերը վատ էին ծալվում, երկարատև նավարկությունից. ես վրիպեցի։ Թաղանթաթևավորը թռավ ավելի հեռու։ Ես եռանդով հետապնդում էի նրան, ժամանակ առ ժամանակ հուսահատ ցատկեր կատարելով։ Հետապնդումը շարունակվում էր կատաղի արագությամբ, բայց ինձ ոչ մի կերպ չէր հաջողվում հոգնեցնել միջատին, և ես ավելի էի հեռանում ճամբարից։

Հանկարծ հեռվում ինչ-որ բան նկատեցի, որն ինձ ստիպեց թաղանթաթևավորին մոռանալ։ Սև կետը վայրենի մարդ էր։ Մեր միջև ընկած տարածությունը արագորեն կրճատվում էր։ Վայրենին մենակ էր, իսկ ես զինված էի բրաունինգով։ Երկար ու սահուն քայլերով ես շարունակեցի համարձակ վազել։ Վայրենին ինձ նկատեց այն ժամանակ, երբ ես նրա կողքին էի։ Դա պապուասյան տիպի մի դեռահաս էր և հավանաբար վերադառնում էր ձկնորսությունից։

Ես թափահարեցի թիթեռնացանցը։ Եվս մի ճարպիկ շարժում, և գերված վայրենին անօգնական մռնչում էր։ Այժմ մնում էր բացատրվել նրա հետ և հասկացնել, որ ես խաղաղ ճանապարհորդ եմ։

Աշխարհով մեկ կատարած ճանապարհորդությունների ժամանակ ես արդեն վայրենիների հետ վարվել էի սովորել։ Ինձ ծանոթ լեզուների օգնությամբ ես ուզում էի հանգստացնել նրան, նույնիսկ փորձեցի սառնաշաքարով ձեռք բերել նրա մտերմությունը։ Այդպիսի հյուրասիրությանը սովորաբար դիմանալ չի կարող նույնիսկ ամենաարյունարբու մարդակերը։ Բայց իմ վայրենին շարունակում էր գոռալ...

Դեռ չէի հասցրել աչք բացել, երբ նա վայրենու ոռնոցով թռավ և սուր ատամներով կպավ մի քիչ աչքի ընկնող քթիս։ Հարձակումը այնքան անսպասելի տեղի ունեցավ, որ ես չհասցրեցի ինքնապաշտպանության միջոցներ ձեռք առնել։ Հետո այդ վայրենին, ոչ քաղաքակիրթ արարածը, լկտիություն ունեցավ, նախապես խլելով շապելուց ընկած սիգարս, հռհռալ ուղիղ իմ դեմքին։

## ԵՐՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ԻՆՁ ՀԱՄԱՐ ՍՏՐՈՒԿ Է ՀԱՅՏՆՎՈՒՄ

Ահա թե ինչպիսի մարդիկ են բնակվում այս կղզում։ Իմ գիտարշավների ժամանակ, Բորնեոյի և Հարավային Ամերիկայի ջունգլիները, Աֆրիկայի և Նոր Գվինեայի մարդակերները ինձ հետ վերաբերվում էին եթե ոչ ակնածանքով, ապա հարգանքով։ Իսկ այստեղ...

Վատն այն էր, որ երբ զարմանքից ուշքի եկա, պատանին արդեն հասցրել էր թաքնվել արմավենիների մեջ։ Հուսախաբված ու կատաղած, ուռած քթով և կղզին վերանվանելու լուրջ մտադրությամբ, դանդաղ քայլերով վերադարձա ճամբար։ Պատկերացրեք իմ ապրումները, երբ ճամբարում ես նորից տեսա այդ անպիտան նոր սմոլանդացուն։ Իմ իրերի հետ նա վարվել էր ավելի վատ, քան ամենաանխնա մաքսավորը. անտարակույս չէր գոհացել այն անախորժություններից, որ հասցրել էր ինձ։ Խարդախը անպատկառորեն ծխում էր Հավաննայի թանկագին սիգարներիցս մեկը, մորեղբորս աղջկա՝ Ալգոտի նվերը։ Զարհուրելի ցասում եռաց ներսումս։

«Արկղի Սատանան», որը միշտ վերցնում եմ հետս բոլոր վտանգավոր ճանապարհորդությունների ժամանակ, նորից իր գործը տեսավ։ Մի անգամ ես դրանով պնդերես մի նեգրի այն աստիճան վախեցրի, որ սարսափից սպիտակեց։ Այժմ հերթը հասել էր նոր սմոլանդացի վայրենուն։ Նա այնպես վախեցավ, որ գանգուր մազերը մի ակնթարթ բիզ-բիզ կանգնեցին։ Հետո նա նստեց ավազին, ձեռքերը ձգեց վերև և դաստակները միաժամանակ պտտեցնելով տասնչորս անգամ քիթը խփեց գետնին։ Հավանաբար, նա իր հնազանդությունն էր արտահայտում։ Այդ վայրենին հաճելի բազմազանություն մտցրեց իմ կյանքում։ Երբ ես, համաձայն իմ սովորությանը, կեսօրվա ամենաշոգ ժամերին պառկում էի ննջելու, նա արմավենու տերևով քշում էր ճանճերը և հովհարում ինձ։ Դրանից բացի, նա իսկույն սովորեց գուլպաներ լցնել, ճաշ պատրաստել և զանազան օգտակար բաներ անել։



## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ԿՈԼԵԿՑԻԱՆԵՐԻ ՀԱՎԱՔՈՒՄԸ

Լեզվաբանական բնածին ընդունակություններս ինձ օգնեցին արագ յուրացնել Ումպի (այդպես

էր կոչվում «իմ տորուկը») ինքնահատուկ լեզվի մի քանի դարձվածքները։ Պարզվեց, որ նա հետաքրքրասեր և մտածող վայրենի է։ Ումպն իր հերթին շուտով սկսեց մի քանի բառեր հասկանալ շվեդերեն։ Օրինակ՝ եթե ասում էի «Կլոնկ չի սնիֆֆ բրնձի շիլա» ապա այդ նշանակում էր. «բրնձի շիլայում շաքար քիչ կա»։

Անհրաժեշտ էր նաև Ումպից լավ կոլեկցիոներ



պատրաստել, որպեսզի գիտական որոնումների ժամանակ կարողանար օգտակար լինել ինձ։ Ես Ումպին ցուցադրեցի ինչպես օգտվել թիթեռնացանցից և տարբեր նրբություններ ու ձևեր սովորեցրի։ Ինչպես օրինակ՝ «Հարձակում հետևից», «Վագրի թռիչք» և «Շրջադարձ թաթի վրա», որոնք անհրաժեշտ են արագ թռչող միջատներին որսալու համար։ Ումպը մեծ շնորհք ցուցաբերեց։

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ՆՈՐ ՍՄՈԼԱՆԴԻԱՅԻ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Մի պայծառ օր ես նստած էի ծովափնյա ճամբարումս և զրուցում էի Ումպի հետ, որը հենց նոր ձուկ էր բռնել ճաշի համար։ Մոտ մեկ ամիս կլիներ, ինչ ես Նոր Սմոլանդիայում էի։ Թավուտներում արդեն կատարել էի բավականին հաջող զբոսանքներ։

— Վաղը արշավի ենք ելնում դեպի կղզու ներքին շրջանները, — հայտարարեցի ես, — պատմի՛ր, թե ինչ գիտես դու այնտեղի բարձր լեռների մասին։ Եղե՞լ ես դու այնտեղ երբևիցե։

— Եղել եմ, տե՛ր իմ, — պատասխանեց Ումպը, — Օ՜, դա վտանգավոր երկիր է. ահռելի գազաններ, տուֆֆի-տուֆֆիներ։ Բայց տուֆֆի-տուֆֆիները բարի են։

— Տուֆֆի-տուֆֆիներն ի՞նչ են, — զարմացա ես, — մարդի՞կ։

— Այո՛, տե՛ր իմ, բայց մարդիկ էլ չեն, — հետևեց տարօրինակ պատասխանը։

Որքա՜ն հետաքրքիր է։ Միգուցե իմ երազանքը իրականանա այստեղ՝ Նոր Սմոլանդիայում և ես հայտնաբերեմ կապկամարդ, այն, ինչ մտածում էի գտնել Աֆրիկայի և Հարավային Ամերիկայի անտառներում, կամ էլ կտեսնեմ մի որևէ ուրիշ, նույնչափ անսովոր արարած։ «Ոչ, ոչ, — մտածում էի ես, — ավելի լավ է չշտապել երազանքներով, չէ՞ որ ես համոզվել եմ, որ զարմանալի մարդկանց և զարմանալի կենդանիների մասին բնիկների ստեղծած պատմություններին պետք է վերաբերվել զգուշորեն։ Սովորաբար դա բորբոքված երևակայության արդյունք է, նման այն երկգլխանի ջրաձիուն, որին ես ամիսներով իզուր փնտրում էի Տանգանիկա լճի մոտ։ Այնուամենայնիվ, ինձ բախտ է վիճակվել սեփական աչքերով տեսնել, թե ինչ են ներկայացնում իրենցից Նոր Սմոլանդիայի լեռնային շրջանի բնակիչները։

Հաջորդ օրը սկսվեց հոգնեցուցիչ արշավը։ Ճանապարհն անցնում էր համարյա անանցանելի ծմակներով, տզրուկներով ու մոծակներով լի ճահիճներով, որտեղ իրերից բացի, երկար ժամանակ ստիպված էի լինում շալակած տանել կարճոտն Ումպին։

Գերմարդկային ջանքերով մենք երկու օրում բարձրացանք սարահարթ։

Ես կսմթեցի քիթս, որպեսզի համոզվեմ, որ դա երազ չէ։ Հետազոտողիս հայացքի առջև ներկայացավ նախապատմական մի բնանկար, հմայիչ ու միաժամանակ զարհուրելի։ Երեկոյան երկնքի գորշ ֆոնի վրա, ծանր թևերով ճեղքելով օդը, սուրում էր անհավատալի և հսկա չղջիկների երամը, իսկ ճահճոտ ավազանի մոտ պառկել էին երկու սարսափելի, աներևակայելիորեն մեծ մողեսներ։ Մենք ցնցվեցինք և շտապեցինք հեռանալ, որպեսզի այդտեղից պատկառելի հեռավորության վրա



ճամբար գցենք։

Գիշերն անցկացնելով սարսափելի երազներով, առավոտյան ճանապարհ ընկանք։ Որքան բարձրանում էինք, այնքան բուսականությունն ավելի աղքատանում էր։ Իսկ կենդանական աշխարհը…

(Շարունակելի)




ԱԻԴԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նոր ուսումնական տարվա զանգը դեռ չէր ղողանջում: Ասֆալտապատ բակում թափուր էին մնացել կավիճով գծված կլասի խաղադաշտերը: Մանկական կոշիկները ասֆալտի վրայից էլ չէին ջնջում կավիճի հնացած հետքերը: Արձակուրդ էր: Միայն ուսուցիչներն էին շարունակում աշխատանքի գալ: Մերթ ընդ մերթ երևում էին նաև աշակերտներ: Նրանք կամ գալիս էին ավարտական երեկոյին, կամ իմանալու, թե երբ են մեկնում տուրիստական շրջագայության:

Այդպիսի մի օր մենք եղանք Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան դպրոցում: Վերին հարկի մեծ դասասենյակներից մեկում կազմակերպված էր դպրոցի ասեղնագործության և կարուձևի ցուցահանդեսը: Աշակերտները եկել էին ծնողների հետ, եկել էին դիտելու և հպարտանալու իրենց և դասընկերների աշխատանքներով:

Ահա նախամուտքում կանգնած է ճերմակ ժապավենով մի թխահեր աղջիկ: Մենք հարցնում ենք, թե որտե՞ղ է ցուցահանդեսը, իսկ նա ժպտում է գոհունակ ժպիտ, որը կարծես ասում է, թե ինքն էլ աշխատանքներ ունի այնտեղ, ինքն էլ է ցուցահանդեսի մասնակիցներից: Աղջիկը առաջնորդում է մեզ և մանկական շտապողականությամբ պատմում.

— Կարինեն էլ է մասնակցել, Անահիտն էլ, Աիդան էլ, Մելանիան էլ, բոլոր-բոլոր մեր աղջիկները:

Մանկական այդ անմիջականությունը մենք չենք կոտրում: Ձևացնում ենք, թե ճանաչում ենք բոլոր աղջիկներին, իսկ նա նույն եռանդով շարունակում է.

— Հիմա մենք մեր շորերը կարողանում ենք ինքներս կարել, ա՛յ, իմ այս շրջազգեստը ես եմ կարել:

Նայում ենք նրա հիանալի կարված շրջազգեստին և դժվարանում հավատալ, բայց ով գիտի՝ գուցե և ճշմարիտ է, այդ բոլորը կպարզվի ցուցահանդեսը դիտելիս: Կարուձևի և ասեղնագործության խմբակի ղեկավար Սաթենիկ Թոփուզյանը դիտողներին բացատրում, պատմում է ցուցանմուշների և դրանք պատրաստող աշակերտների մասին: Ս. Թոփուզյանի հագած շրջազգեստը գեղեցիկ է, խիստ և զուսպ, վրան ոչ միայն ճըչացող, աչքի զարնող բան չկա, այլ ընդհակառակը, կոշիկները, գուլպաները, պայուսակը, ամենը, ամենը ընտրված են ներդաշնակ և ճաշակով: Հենց այստեղից էլ կարելի է ենթադրել, որ շատ ու շատ գիտելիքների և հմտությունների հետ մեկտեղ՝ երեխաները նրա մոտ ձեռք են բերել գեղեցկի զգացում, ճաշակ: Դրանից հետո արդեն զարմանալի չէր, որ աշակերտուհիները կարողացել էին կարել շրջազգեստներ, գույների միջոցով հասնել ներդաշնակության:

Աջ անկյունում ցուցադրված են գեղեցիկ վերնաշապիկներ: Սարգսյան Կարինեն և Ղուկասյան Լիլիթը կարողացել են ստեղծել գույների սքանչելի համադրություն: Կարմիր վերնաշապիկի վրա Կարինեն դեղին մանրածաղիկներ է ասեղնագործել, իսկ Լիլիթը կապույտ վերնաշապիկի վրա՝ մամռականաչ զարդանախշ: Այդ նախշազարդերը չեն կրկնվում, դրանք հայկական դաշտային ծաղիկներ են: Երբ կկոցած աչքերով դիտում ես խայտաբղետ վերնաշապիկներով զարդարված անկյունը, մի պահ թվում է, թե գտնվում ես ծաղկաշատ լեռնալանջին, ուր գույները դեռ չեն կորցրել իրենց առավոտյան պայծառությունը:

«Անահիտը, Կարինեն, Մելանիան... բոլորը, բոլո՛րը»,— կարծես նորից հնչում է աշակերտուհու խանդավառ ձայնը: Այժմ հավատում ենք նրան: Կողք-կողքի դրված են փոքրիկ դերձակուհիների կարած շրջազգեստները՝ վարդագույն շրջազգեստը փիրուզե մանուշակների ասեղնագործ երիզով, սրճագույն ու դեղին մանրածաղիկներով: Ով գիտի, ինչ են հիշել այդ փոքրիկ դերձակուհիները, երբ կարում էին իրենց շրջազգեստները և ծաղկազարդում: Թերևս հիշում էին Ծաղկաձորի պիոներական ճամբարի շուրջը փռված մարգագետինները՝ կակաչների կարմիր հրդեհով, անմոռուկների դեղին ոսկին, որ սփռված է անտառի բացատներում: Երեխաներն իրենց տեսածներն ու տը-

պավորությունները են ասեղնագործել շրջազգեստներին: Իսկ բարակ երկաթալարերից և մետաքսաթելերից պատրաստված տուղտածաղիկները մեջ ընդ մեջ զարդարում են ցուցասեղանները: Տուղտածաղիկների առջև փռված է մեր հին վարպետների օրինակով պատրաստած, 6-րդ դասարանի աշակերտուհիներ Գույումջյան Աննայի և Դաքեսյան Մայիդայի աշխատանքը, որը կրում է «Հայկական ծրար» պիտակը։ Գուցե ձեզ հետաքրքրի, թե ինչու է կոչվում «Հայկական ծրար»: Շատ-շատ տարիներ առաջ, երբ դեռ մեր տատիկները կամ նրանց մայրիկներն ու տատիկները չունեին տարբեր մեծության ճամպրուկներ ու պայուսակներ, բաղնիքի, ներվիրատվության և կամ փայփայված հագուստների ու կտորների համար օգտագործում էին հատուկ պատրաստված այսպիսի «ծրարներ»: Դրանք լինում են քառանկյուն, տարբեր գույների երկտակ կտորից, որոնցից մեկը ձևավոր կտրվում, դրվում է մյուսի վրա ու մանրիկ, թեք կարով միացվում: Կարի նրբագեղության, ձևավոր կտրվածքի և գույների համադրության շնորհիվ ստացվում է շատ գեղեցիկ ծրար: Աննան և Մայիդան պատրաստել են ճիշտ այդպիսի մի ծրար:



Լուսանկարները՝ Բ. ԳԱԶԱԶՅԱՆԻ

Ցուցասենյակի կենտրոնում սեղան է բացված, վրան դրված է ճեղքված նուռ, խաղող, տանձ, խնձոր: Մի պահ կարծում ես, թե այս բոլորը իրական մրգեր են: Իսկ սփռոցը, որ ճերմակ կըտավից է պատրաստված և վըրան կանաչ ու ոսկեգույն հասկեր ունի, նույնպես 6-րդ դասարանի աշակերտուհիների՝ Ղազարյան Կարինեի, Նիկողոսյան Ռուբինայի և Մինասյան Անահիտի աշխատանքն է: Այդ սփռոցը հայկական է նրանով, որ զարդագոտին լայն ժապավենի ձևով գտնվում է կենտրոնում և ոչ թե ձգվում է եզրերով: Ցուցասենյակի մի անկյունում խոհանոցն է: Տղաները ծվի կճեպներից և պլաստիլինից ափսեներ, բաժակներ և տնային ամանեղեն են պատրաստել, իսկ աղջիկները ասեղնագործել են սրբիչները։ Մեկի վրա մանկական թաթիկներ կան, սրանով պետք է երեխաները սրբվեն խոհանոցային աշխատանքից հետո, մյուսների վրա ափսեներ կամ գավաթներ են ասեղնագործված: Յուրաքանչյուր սրբիչի վրա պատկերված է այն իրը, որի համար պետք է օգտագործվի այն:

Ցուցասենյակում շրջում են ծնողներն ու հյուրերը, բոլորը գոհ են, ուրախ: Աշակերտները հուզված հետևում են դիտողներին, բացատրում, պատմում, թե ինչպես են պատրաստել այս կամ այն ցուցանմուշը...

## ԻՐԻԿՆԱՄՈՒՏ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Արևի վերջին շողերն են գողում
Ժայռի շուրթերին՝ ձորի մեջ թիկնած.
Գետի մեջ խոտի սովերն է լողում.
Կակաչի թերթն է ծիծաղում շիկնած:

Հովը վազում է թփերի միջով.
Լսում եմ նրա մեղեդին ծանոթ.
Մութը սահում է գիմացի լանջով.
Կորչում են հեռվում ճամփա ու արոտ:

Աստղերը ցող են մաղում երկնքից.
Ջղջիկն է որսի հետևից սուրում,
Լուսինն է ելնում ամպերի ճեղքից.
Ցուրչը խաղաղ է՝ դաշտերն են նիրհում:

# ԳՐԻՊ

Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ

(Բժիշկ)



Լա՛վ լսիր դու ինձ, փոքրիկ բարեկամ,
Եթե մարմինըդ ամեն օր կոփես,
Ձես հիվանդանա դու ոչ մի անգամ,
Ինձանից առաջ ի՛նքդ քեզ կօգնես...

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Տարիներ առաջ էր, ես նոր էի ավարտել բժշկական ինստիտուտը և աշխատանքի անցել Հայաստանի գյուղաքաղաքներից մեկում: Շատ երկար և անձրևոտ աշնանը հաջորդեց ցուրտ ձմեռը: Բայց ձյուն չկար: Ահա հենց այդ օրերին էլ քաղաքում գրիպի համաճարակ բռնկվեց: Տուն չկար, որ հիվանդ չունենար: Առանձնապես շատ տուժեցին երեխաները, որովհետև նրանց օրգանիզմը ավելի թույլ դիմադրողականություն ունի:

Ես երբեք չեմ մոռանա մի դեպք, որին ականատես եղա: Մենք, երիտասարդ բժիշկներս, միասնական ուժերով պայքարի էինք ելել համաճարակի դեմ:

Երեկո էր, մենք ամբողջ օրը շրջել էինք տները, շատ հոգնել: Ահա և վերջին ծայրամասային տունը: Սենյակի անկյունում պառկած էր 10—12 տարեկան մի աղջիկ: Նա իր խոշոր, երկնագույն աչքերը հառել էր առաստաղին և խուլ տնքում էր: Ես մոտեցա աղջկան, բռնեցի ձեռքը: Նա ջերմություն ուներ և գանգատվում էր սաստիկ գլխացավից: Աղջկա կողքին նստած էր սևազգեստ մի պառավ կին: Նա խորհրդավոր ինչ-որ կախարդություններ էր անում, իսկ մայրը հնազանդ կատարում էր նրա ասածները:

Երեխան գրիպով էր հիվանդ, անհրաժեշտ էր շտապ բժշկական օգնություն ցույց տալ: Բայց ցավալին այն էր, որ մայրը վճռականապես մերժեց կատարել մեր հանձնարարությունը: Մենք բացատրեցինք, որ երեխայի կյանքը վտանգի տակ է և ամեն կերպ աշխատեցինք համոզել, որ անհրաժեշտ է տեղափոխել հիվանդանոց: Բայց մեր ջանքերն ապարդյուն անցան...

Մի քանի օր անց, ես կրկին այցելեցի այդ փոքրիկ աղջկան և սարսափով նկատեցի, որ երեխայի վիճակը շատ ծանր է, նկատվում են գրիպի բարդություններ՝ ականջներում ուժեղ խշշոց, չոր հազ և սուր մկանային ցավեր:

Այս անգամ արդեն մայրը չհակառակվեց, և երեխային շտապ տեղափոխեցինք հիվանդանոց: Բայց արդեն ուշ էր, ճիշտ է փրկվեց աղջկա կյանքը, և նա ապրեց, բայց մնացին ճակատագրական հետևանքներ. աղջիկն այլևս չէր լսում...

Այժմ անցել են տարիներ, փոխվել են ժամանակները, այժմ բժշկությունը հասել է այն բանին, որ վերացել են գրիպի և մյուս հիվանդությունների համաճարակները: Բայց, երեխաներ, պետք է միշտ հիշել, որ գրիպը վտանգավոր հիվանդություն է: Ճիշտ է, հաճախ նա շատ թեթև է ընթանում և ոտքի վրա հնարավոր է լինում հաղթահարել, բայց դրանից չպետք է ոգևորվել, միշտ անհրաժեշտ է ձեռք առնել պրոֆիլակտիկ միջոցառումներ: Չէ՞ որ գրիպը շատ մեծ բարդություններ է տալիս: Հաճախ կարելի է տեսնել խրոնիկ ականջացավից տառապող երեխաների՝ դա գրիպի հետևանք է. գրիպը ազդում է նաև թոքերի, սրտի, երիկամների, տեսողության վրա, առաջացնում է մկանային ու ռևմատիկ սուր բորբոքումներ և զանազան այլ հիվանդություններ: Գրիպով չհիվանդանալու համար առաջին հերթին անհրաժեշտ է կոփել մարմինը. ամառ, թե ձմեռ սառը ջրով շփումներ կատարել, սիստեմատիկ զբաղվել ֆիզկուլտուրայով, հաճախակի լինել մաքուր օդում, ռեժիմով սնվել:

Իսկ հիվանդանալու դեպքում պետք է կատարել բժշկի բոլոր խորհուրդները: Լավ կլինի հիվանդին առանձնացնել, ամեն օր նրա շրջապատը՝ հատակը, օգտագործած իրերը, դռների բռնակներն ու մահճակալները մաքրել ախտահանող լուծույթում թրջած շորով և հաճախակի օդափոխել սենյակը:

Գրիպը վտանգավոր հիվանդություն է, բայց հնարավոր է հեշտությամբ կանխել...

# ՄՐՐԻԿԸ ԱՐԱԳԱԾ ԱՎԱՆՈՒՄ

Շատ երկրներում, ինչպես և մեզ մոտ, հաճախ կարելի է հանդիպել պտտահողմի կամ, ինչպես երբեմն ասում են՝ «սատանի քամու»:

Պտտահողմերը առաջանում են պարզ և քիչ ամպամած օրերին, երբ գետնի մակերեսն ուժեղ տաքանում է: Թեթևացած օդը ուղղահայաց բարձրանում է վերև, իր հետ տանելով փոշի, ավազ, թղթի կտորներ և ուրիշ առարկաներ: Սովորաբար պտըտահողմը 10—20 մետրից ավել չի բարձրանում և ցրվում է: Այդ չափաճշի, մեզ ծանոթ պտտահողմը որոշ չափով նմանվում է ահավոր մրրիկին:

Մրրիկը, ի տարբերություն պտտահողմի, ծագում է խիտ, արճիճա-կապտավուն ամպերի եզրին, որտեղ միմյանց են հանդիպում տարբեր տաքություն և ճնշում ունեցող մեծաքանակ օդային զանգվածներ: Բացի այդ, անձրևաբեր, մուգ գույնի ամպերը լիցքավորված են լինում մթնոլորտային էլեկտրականությամբ և դրա հետևանքով էլ ունենում են ձգողական ուժ: Մրրիկը կարող է առաջանալ ինչպես ցամաքի, այնպես էլ ծովերի վրա: Մրրիկի պտտվող սյան մեջ արագությունը մեկ վայրկյանում հասնում է մոտ 100 մետրի, իսկ հորիզոնական տեղաշարժը՝ մեկ ժամում մոտավորապես 30 կիլոմետրի: Այդ երևույթը կարող է մի քանի րոպեում ցրվել, բայց կարող է և տևական լինել, շարունակվելով 3—4 ժամ:

Մրրիկը հաճախ ուղեկցվում է հորդառատ անձրևով, կարկուտով և ամպրոպով:

1959 թ. հունիսի 8-ին ես ականատես եղա Հայաստանում հազվադեպ տեղի ունեցող մրրիկի:

Արագած ավանում արևոտ, տաք օր էր: Օդի ջերմությունը



հասնում էր 20 աստիճանի: Ցերեկվա ժամը 4 անց կեսին հյուսիս-արևմուտքից սկսեցին երևալ մեծ քանակությամբ մուգ կապտավուն, ցածր ամպեր: Դրանից հետո, ավանից հյուսիս-արևմուտք առաջացավ պտտահողմ, որը բաց դարչնագույն փոշու սյան նման շարունակում էր բարձրանալ: Միաժամանակ ամպերի ստորին մասում առաջացավ ձագարաձև ձգվածք, որը իջնում էր դեպի բարձրացող պտտահողմը: Նրանց ծայրերը միացան: Այսպիսով ցամաքի վրա առաջացավ մրրիկ:

Մրրիկի ժամանակ շրջակայքում փչում էին միջին արագության քամիներ (3—8 մետր վայրկյան), իսկ մթնոլորտային ճնշումը անընդհատ իջնում էր:

Մրրիկը սկիզբ առավ Թալինի ջրանցքի աջ կողմում, ջրհան կետի մոտ: Երբ անցավ ջրանցքը, առաջացրեց 5—6 մետր բարձրությամբ ջրի շատրվան: Առաջին շենքը, որը ենթարկվեց մրրիկի հարվածին, զրկվեց կըտուրից, կոտրվեցին լուսամուտների շրջանակներն ու ապակիները, քարե պատը վերևի մասում ճեղքվեց: Տան մոտի էլեկտրասյունը հիմքից կոտրվեց: Օդ բարձրացան և նորից ներքև ընկան մետաղյա մի տակառ և թուջի մի ծանր խողովակ: Հետագայում իմացանք, որ մի ուրիշ տան բակից օդ էր բարձրացել փայտե մի անակ, որին կապված էր եղել շունը: Շունը օդում արձակվել էր կապից և ցած ընկնելով, կոտրել առջևի երկու թաթերը:

Մրրիկը մտնում էր շենքերի մեջ: Սենյակներից դուրս բերում բարձեր, շորեր և այլ իրեր:

Մրրիկը համեմատաբար ավելի մեծ վնասներ էր պատճառել ավանի կենտրոնական մասում:

Նույն օրը Արագած ավանից ոչ հեռու, Հակո գյուղի շրջակայքում, տեղացին հորդառատ անձրևներ, որի հետևանքով առաջացավ հեղեղ:

Արթիկի շրջանի Բաշ գյուղի տարեց մարդիկ հիշում են, որ նման երևույթ տեղի ունեցել է իրենց մոտ 1913 թվականին:

*Լ. ԷՆՖԻԱՋՅԱՆ*

*(Հայկական ՍՍՌ-ի Հիդրոմետեորոլոգիական ծառայության ավագ ինժեներ)*

# ԸՆԿՂՄՎԱԾ ՆԱՎԵՐ

*Շվեդական «Վազա» նավը 3 դար ընկած է մնացել 35 մ խորության վրա: Նա ընկղմվել է 1628 թվականին, Ստոկհոլմից ոչ հեռու:*

*Հեշտ չի եղել գտնել այդ նավը, որը ծածկված էր տիղմի հաստ շերտով: Բայց տիղմի շնորհիվ նա պահպանվել է այնքան լավ, որ հաջողվել է նրան ամբողջական և անվնաս վիճակում բուքսիրով մոտեցնել ափին, ավելի ծանծաղ տեղ:*

*Ջրասուզակներին մեծ դժվարությամբ հաջողվեց մաքրել տիղմը և ափ դուրս բերել բոլոր թնդանոթները:*

*«Վազան» 17-րդ դարի միակ*

նավն է աշխարհում, որը պահպանվել է մինչև մեր օրերը։ Այդ նավի համար պետք է կառուցվի հատուկ շենք-թանգարան։

Բայց մեզ չեն պահպանվել ավելի հին նավեր, քան «Վասա» նավը։ Այդպիսի նավ կա և շուտով այն նույնպես կցուցադրվի։ Բայց այն գտնվեց ոչ թե ծովի հատակում, այլ... հողի մեջ։

1954 թվականին Եգիպտոսում Քեոպսի հռչակավոր բուրգից ոչ հեռու հնագետները պեղումների ժամանակ ավազի հաստ շերտում գտան մի մեծ նավ։ Ավելի քան երկու տարի հարկավոր եղավ, որպեսզի ավազի տակից դուրս բերեն այդ հազվագյուտ գանձը։ Գիտնականները եզրակացրին, որ այդ նավը կառուցված է եղել մեր թվագրությունից ավելի քան 2800 տարի առաջ։ Այդ նավով թաղման վայրն է տեղափոխվել մահացած փարավոնի դիակը, ապա նավը թաքցրել են բուրգի հիմքից ոչ հեռու։ Նա հողում մնացել է ավելի քան քառասունյոթ դար։

## ՇԵՐԱՄ

Շատ միջատներ կան, որոնք մետաքս արտադրող գեղձեր ունեն և հյուսում են բոժոժներ։ Սակայն արժեքավորը միայն թթենու տերևներով սնվող միջատն է, որին ասում ենք շերամի որդ կամ շերամ։

Շերամի որդը անցյալում եղել է վայրի վիճակում, բայց հետագայում մարդիկ գնահատելով նրա հյուսած բոժոժից ստացված մետաքսը, ընտելացրել են։

Շերամի հայրենիքը Չինաստանն է. այնտեղից է տարածվել Եվրոպա, Պարսկաստան, Թուրքիա և մեզ մոտ։ Ներկայումս Չինաստանում դեռ կան ոչ ընտանի շերամի որդեր, որոնք սնվում են բացօթյա կաղնու տերևներով և հյուսում են խոշոր բոժոժներ, որից ստացված թելից պատրաստում են ընտիր, գեղեցիկ չեսունչա կտորը։

Մետաքսաթելը շատ ամուր է և դիմացկուն։ Մեկ միլիմետր հաստությամբ թելը կարող է պահել մինչև 42 կիլոգրամ ծանրություն։ Իրենց ամրությամբ մետաքսաթելերին զիջում են բամբակի, բրդի և վուշի թելերը։ Մետաքսը, բացի հագուստեղեն պատրաստելուց, օգտագործում են նաև ավիացիայում, էլեկտրատեխնիկայում, բժշկության մեջ և այլն։

Շերամի որդը միևնույն ժամանակ սառնասեր միջատ է, որովհետև նա չունի իր մեջ ջերմություն, ինչպիսին ունեն մարդիկ, մանր և խոշոր եղջերավոր անասունները, շները և այլն։ Նրա մարմնի ջերմությունը միշտ հավասար է լինում շրջապատի օդի ջերմությանը։ Փորձերը ցույց են տվել, որ որդը կենսունակ է լինում սնվելու, աճելու, զարգանալու, մեծանալու և բոժոժ հյուսելու միայն բարձր ջերմության պայմաններում (24—26 աստիճան)։ Դրա համար էլ մեր կոլտնտեսությունների շերամանոցներում վառում են վառարաններ և ջերմությունը հասցնում են մինչև 26 աստիճանի։

Վ. ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

## ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ... ԾԱՌԻ ՎՐԱ

(Վարորդի պատմածը)

Ամառվա արևոտ օրերից մեկն էր։ Ավտոբուսով դուրս եկա Գյուլագարակի մանկական առողջարանից և ճանապարհ ընկա դեպի Ստեփանավան։

Բարձունքից իջնելիս՝ զգացի, որ մեքենայի արագությունը հետզհետե ավելանում է։ Ձեռքս տարա արագության փոփոխման լծակին և տագնապով տեսա, որ այն չի գործում։ Անմիջապես սեղմեցի արգելակման լծակը, բայց սա նույնպես շարքից դուրս էր եկել։ Մեքենան սլանում էր գլխապտույտ արագությամբ. ինչ անել, ինչպես խուսափել վթարից։ Առանց վայրկյան կորցնելու՝ մեքենան ուղղեցի ճանապարհից դուրս, դեպի անտառ։ Մեքենան մառաշ անիվները ջարդելով սլանում էր, երբ դեմս հայտնվեցին երկու խոշոր ծառ։ Թիկունքից լսեցի ուղևորների սարսափի ճիչերը... բայց կատարվեց անսպասելին. մեքենան բարձրացավ խիստ թեքությամբ ու կանգնեց։ Դուրս նայեցի խցիկից և ինչ տեսնեմ՝ մեքենան գտնվում է ծառի վրա, գետնից երկու մետր բարձրությամբ։ Մեքենայի ուժեղ հարվածից ծառը թեքվել էր ու ճանապարհ դարձել մեքենայի համար։ Ուղևորներին զգուշացրի, որ ոչ մի շարժում չանեն, այլապես ճոճվող մեքենան կարող էր պոկվել ծառից։ Լավ էր, դաշտում աշխատող կոլտնտեսականները նկատեցին և օգնության հասան։

Ռ. ՆԱԶԱՐՅԱՆ



# ՖՈԿՈՒՍՆԵՐ

Բաժինը վարում է
ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ
(Հայկական ՍՍՌ
ժողովրդական արտիստ)

## ԵՐՐՈՐԴ ՖՈԿՈՒՍ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԿԱՏԱԿՈՎ ՋՈՒՐ ԽՄԵԼ

Որպեսզի ձեր ելույթն ավելի հետաքրքիր և աշխույժ անցնի, դուք կարող եք ծրագրի մեջ մտցնել այս կատակ-ֆոկուսը:

Սեղանին դնում եք մի բաժակ ջուր և այն ծածկում հանդիսականներից մեկի գլխարկով: Հայ-





տարարում եք, որ դուք կարող եք առանց գլխարկը վերցնելու խըմել բաժակի ջուրը (տե՛ս Նկ. 1): Կռանում եք բաժակի վրա և շրթունքներդ հպելով գլխարկին ձևացնում, թե իբր ջուր եք խըմում (տե՛ս Նկ. 2): Ապա հրավիրում եք մի հանդիսականի և խնդրում ստուգել, թե արդյոք բաժակում ջուր մնացե՞լ է:

Եվ ահա, երբ բեմ բարձրացած հանդիսականը բաժակի վրայից կբարձրացնի գլխարկը, դուք շատ հանգիստ կվերցնեք բաժակը և հաղթականորեն կխմեք ջուրը:

Այս կատակ-ֆոկուսը թեև շատ հասարակ է, բայց այն իր անսպասելի լուծումով հանդիսականներին մեծ հաճույք է պատճառում: Միաժամանակ այն ավելի է լարում հանդիսականների երևակայությունն ու հնարամըտությունը:

## ՉՈՐՐՈՐԴ ՖՈԿՈՒՍ

### ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՀԱՆԳՈՒՅՑ

Վերնագրից անգամ կարելի է կռահել, որ խոսքը վերաբերվում է ինքն—իրեն քանդվող հանգույցին:

Վերցնում եք նախկին ֆոկուսներից արդեն ծանոթ թաշկինակներից մեկը, անկյունագծային երկու ծայրերից բռնելով ոլորում, ապա ծայրերն իրար վրա բերելով՝ կապում, որից հետո հանդիսականներին մոտ գնալով, հաշվում եք մինչև երեքը, փչում հանգույցի վրա և ձգում թաշկինակի ծայրերից... Հրա՜շք. հանգույցը բացվում է, ոչ մի հետք չթողնելով թաշկինակի վրա:

Ահա թե ինչպես է կատարվում այդ:

Թաշկինակի անկյունագծային ծայրերից մեկը սեղմում եք ձախ ձեռքի ցուցամատի և միջնամատի արանքում (տե՛ս Նկ. 1), իսկ մյուս ծայրը բռնելով աջ ձեռքի բթամատով ու ցուցամատով՝ ոլորում մի քանի անգամ (տե՛ս Նկ. 2), ապա աջ ձեռքում պահած թաշկինակի ծայրը դնում եք ձախ ձեռքի ափում ու սեղմում բթամատով (տե՛ս Նկ. 3):

Թաշկինակի օղակում մտցնում եք ձեր աջ ձեռքը ափով դեպի ձեզ, ձախ ձեռքից ցուցամատով ու միջնամատով վերցնում եք թաշկինակի ծայրը և օղակի միջով ներքև ձգում: Հենց այդ պահին ձախ ձեռքի միջնամատով և մատնամատով սեղմում եք թաշկինակի այն մասը, որի ծայրը սեղմված է ձախ ձեռքի բթամատով (տե՛ս Նկ. 4 և 5): Պինդ ձգելով առաջացած կեղծ հանգույցը, արագ և աննկատ ազատում եք հանգույցից ձեր ձախ ձեռքի երկու մատը:

Ստացված հանգույցը արտաքին ձևով չի տարբերվում իսկական հանգույցից: Դուք ինքնավստահ կերպով «հանգուցված» թաշկինակի երկու ծայրից բռնած մոտենում եք դահլիճին, հաշվում մինչև երեքը, փչում հանգույցի վրա և ձգում թաշկինակի երկու ծայրերից, թաշկինակի հանգույցը հանդիսականների լարված աչքերի առաջ անհետանում է՝ զարմանք և հետաքրքրություն առաջացնելով նրանց մոտ:

Թեև այս ֆոկուսը հասարակ է, բայց այն պահանջում է ցուցադրողից ճարպկություն և հըմտություն, որպեսզի հանդիսականը չկարողանա ըմբռնել ֆոկուսի գաղտնիքը: Այդ պատճառով, ինչպես բոլոր ֆոկուսների, այնպես էլ այս ֆոկուսի կատարման համար հարկավոր է նախօրոք լավ վարժվել:




### ԿԱՐՈ՞Ղ ԵՔ...

Այս շրջանակները եռանկյունաձև դասավորեք այնպես, որ յուրաքանչյուր կողմում թվերի գումարը լինի 20:




## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

Ուղղահայաց

1. Գիշատիչ թռչուն, 2. հրաբուխ՝ Սիցիլիա կղզում, 3. Հարավային Ամերիկայում տարածված գիշատիչ կենդանի, 5. գետ, որի վրա գտնվում է Փարիզը, 7. օգտակար հանածո, 6. Մեծ Զոնդյան կղզիներից, 9. մետաղ, 11. ազգություն՝ ՍՍՌՄ-ում, 13. գետ՝ Աֆրիկայում, որը սկիզբ է առնում Չադ լճից, 15. պետություն՝ Աֆրիկայում, 17. պետություն՝ Ասիայում, 19. Վոլգայի վտակներից, 21. մոլորակ, 23. դեմոկրատական ռեսպուբլիկա արևմտյան կիսագնդում:

Հորիզոնական

2. գետ՝ Գերմանիայում, 4. քաղաք՝ Չինաստանում, 6. գետ՝ Աֆրիկայի արևմտյան մասում, 8. վտակ՝ Եվրոպայում, 10. միրգ, 12. պետություն՝ Աֆրիկայում, 14. ջրանցք, որի բացմանն է նվիրված «Աիդա» օպերան, 16 քաղաք՝ Չիլիում: 18. մոլորակ 20. աշխարհամաս, 22. գետ՝ ՍՍՌՄ-ում, 24. քաղաք՝ արևմտյան Գերմանիայում:



Կազմեց՝ ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ
(Երևանի № 29 դպրոցի աշակերտ)

## Հանելուկներ

Այն ի՞նչն է, ի՞նչ, կարճ ու հակիրճ,
Իմաստը շատ, բառերը՝ քիչ,
Կայծակի պես թռչում արագ
Ու շրջում է աշխարհն արար:

---

Ի՞նչն է քեզ հետ գնում, գալիս,
Հետը խոսես՝ ձայն չի տալիս.
Երբ արև է, քեզ հետ է նա,
Հենց որ մթնեց՝ կչքանա:

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

Մի թռչուն կա՝ չունի թևեր,
Բայց թռչում է ամպերից վեր:

---

Պառավի պես կուչ է եկել
Իրար վրա շորեր հագել.
Նրա շորերն ով որ հանի,
Նա անպատճառ լաց կլինի:

ՍԵՐԳԵՅ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ «Կարուսելի շուրջը», նկ. ՆՈՒՆԵ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ (Երևան, 11 տարեկան)*

# ԻՍԿ ԴՈ՞Ւ...

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

### 1962 ԹՎԱԿԱՆԻ ԹԵՐԹԵՐԻ ԵՎ ԱՄՍԱԳՐԵՐԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Քո ծնողները, ավագ եղբայրներն ու քույրերը հավանական է վաղուց արդեն բաժանորդագրվել են իրենց հետաքրքրող թերթերին ու ամսագրերին։

Իսկ դո՞ւ, սիրելի դպրոցական, բաժանորդագրվե՞լ ես «Պիոներ» ամսագրին։ Եթե զանազան պատճառներով դեռ չես բաժանորդագրվել, շտապիր։

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

**12 ամիսը — 2 ռ. 40 կ.**
**9 ամիսը — 1 ռ. 80 կ.**
**6 ամիսը — 1 ռ. 20 կ.**
**3 ամիսը — 60 կ.**

Եթե ուզում ես ամեն ամիս ստանալ քո պատկերազարդ ամսագիրը, կարդալ քո սիրելի գրողների պատմվածքները, բանաստեղծությունները ու հեքիաթները, գիտության և տեխնիկայի մասին տպագրվող զրույցները, լուծել «Ժամանցի» հետաքրքրաշարժ խնդիրներն ու առաջարկները, «Պիոներ»-ին բաժանորդագրվիր մեկ տարով։

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—39—06։

ՎՖ 01075 Պատվեր 1492 Տպաքանակ՝ 7400։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5 XI 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան...

Գինը 20 կ.։






# ԼՈՄՈՆՈՍՈՎ

1730 թվականին, ձմեռային մի գիշեր, ձկնավաճառների սայլերի հետ Խոլմոգորից ճանապարհ ընկավ նաև մի գեղջուկ պատանի: Սպիտակ ծովի ափից մինչև Մոսկվա ոտքով կտրեց նա:

Սակայն բարձրագույն դպրոց ընդունվելու համար պետք էր ունենալ և՛ դրամ, և՛ ազնվական ծագում: Իսկ նա ոչ այս ուներ, ոչ այն: Եվ ահա գեղջուկ տղան դիմեց մի անմեղ կեղծիքի. թաքցրեց իր ծագումը և ներկայացավ իբրև ազնվազարմ Միխայլո Վասիլևիչ Լոմոնոսով: Բայց ծագեց նաև մի այլ դժվարություն. դասավանդումը կատարվում էր լատիներեն լեզվով, որին ինքը բոլորովին չէր տիրապետում: Եվ Լոմոնոսովը սկսեց գրաճանաչությունից: Որոշ չափով տիրապետելով լատիներենին, նա ընդունվեց Սլավոնա-հունա-լատինական ճեմարանը և հինգ տարի հետո ավարտեց այն: Սակայն այդ կրթությունը չբավարարեց Լոմոնոսովին: 1735 թվականին մի խումբ առաջադեմ ուսանողների հետ մեկնեց Պետերբուրգ՝ ուսանելու Գիտությունների ակադեմիային կից դասընթացներում: Մեկ տարի անց, որպես ընդունակ և ջանասեր ուսանողի, նրան ուղարկեցին Գերմանիա՝ ուսանելու քիմիա և հանքաբանություն: Բնական գիտությունների հետ միասին, նա ուսումնասիրեց նաև լեզուներ, գրականություն և արվեստ, այնպես որ հայրենիք վերադարձավ որպես ժամանակի ամենազարգացած էնցիկլոպեդիստ ռուս ինտելիգենտը: Ուսանելու տարիներին սկսեց նաև զբաղվել գրական-ստեղծագործական աշխատանքով: Այդ շրջանում գրած նրա մի ներբողը Բելինսկին անվանել է «ռուս գրականության սկիզբը»:

1744 թվականից Լոմոնոսովը աշխատում է Պետերբուրգի Գիտությունների ակադեմիայում, իսկ մեկ տարի անց ստանում քիմիայի պրոֆեսորի կոչում:

Անսահման սերը ռուս ժողովրդի նկատմամբ, անխոնջ եռանդն ու վիթխարի զարգացածությունը նրան մղում են բազմակողմանի լուսավորչական գործունեության:

Այն ժամանակ Ռուսաստանը հետամնաց մի երկիր էր իր արդյունաբերության, կուլտուրայի և գիտության մակարդակով: Ռուսական Գիտությունների ակադեմիայում աշխատում էին օտարազգի գիտնականները:

Լոմոնոսովը երազում էր աճեցնել ռուսազգի գիտնականների սերունդ, ստեղծել այնպիսի ազգային ակադեմիա, ինչպիսին ֆրանսիականն էր: Նա ձգտում էր ուսման և լուսավորության ճանապարհ բացել նաև հասարակ ժողովրդի համար:

Նրա անվերջ պրպտող, անհանգիստ միտքը հարստացրեց գիտության ամենատարբեր բնագավառները: Առաջինը Լոմոնոսովը տվեց նյութի և էներգիայի պահպանման միասնական օրենքը: Դեռևս 1761 թվականին Լոմոնոսովը գտավ, որ Վեներա մոլորակը շրջապատված է մթնոլորտով: Առաջինը՝ նա կռահեց հյուսիսափայլի էլեկտրական բնույթը: Լոմոնոսովը դրեց ռուսական քարտեզագիտության, ծովագնացության և բնագիտության հիմունքները, հիմնեց ռուսական առաջին համալսարանը:

Մինչև Լոմոնոսովը ռուս պոեզիան եվրոպականի ազդեցությամբ տառապում էր վերամբարձ ոճով, անարյուն էր և ժողովրդական բանահյուսությունից կտրված: Նա զարգացրեց ու մի նոր աստիճանի հասցրեց բանաստեղծական խոսքը Ռուսաստանում: Նրա պոեզիայում գովերգվեց բնություն, կյանքի ջերմ զգայունություն, ռուս ժողովրդական լեզվի համն ու հոտը: Հետագա սերնդի բանաստեղծները շատ բանով պարտական մնացին Լոմոնոսովին:.

Լրացավ ռուս մեծ գիտնական Մ. Վ. Լոմոնոսովի ծննդյան 250 ամյակը:



ԳԱՐՈՒՆ

Առաջին դասարանցի Լուսիկ Սարոյանը շատ է սիրում նկարել։ Նրանից ետ չի մնում նրա փոքրիկ եղբայրը՝ վեց տարեկան Սուրիկը։ Նրանք ապրում են Թալինի շրջանի Արտենի ավանում։

Վերջերս նրանք մեր խմբագրություն ուղարկեցին իրենց նկարներից երկուսը։ Ահա այդ՝ նկարները.

Լուսիկը նկարել է «Գարունը» իսկ Սուրիկը՝ «Գիշերը»։



ԳԻՇԵՐ